ՏՔԹ. Յ. ԹԻՐԵԱՔԵԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ
# ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ

Հատորը ամբողջութեամբ յատկացուած է
ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ

ԱՐՄԷՆԻԱ ՏՊԱՐԱՆ
217 Իսթ 26–րդ Փողոց
Նիւ Եորք, Ն. Ե.

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Գիտեմ որ գրական հարցերով զբաղելու ժամանակ չունի հիմա Հայութիւնը՝ երկունքի եւ տագնապի այս օրերուն մէջ։ Բայց աւելի նպաստաւոր պատեհութիւններու սպասելու իմ ժամանակս ալ շատոնց անցած լինելով, ցանկացայ, իմ կենդանութեանս, եւ բազմիցս բազում բարեկամներէ յորդորուելով, ի լոյս տալ իմ մի քանի փանաքի աշխատութիւններս որոնց համար, յրնթացս ամաց, հոգի եւ սիրտ եմ մաշեցուցեր՝ երկար դեգերմամբ։

Եթէ ներկայ սերունդը չէ, ապագայն, յուսով եմ որ, առիթ եւ պարապ պիտի ունենայ ուշադրութիւն դարձնելու, այս ուղղութեամբ, իրմէ առաջ եղած կատարուած աշխատութեանց։

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## ա. Բանաստեղծութեան վրայ առ հասարակ

*Որչափ որ նպատակ դրած ենք մեզ՝ զուտ քերթողական արուեստին վրայ գրելու, սակայն անկարելի է զանց առնել, գոնէ հարեւանցի իմն, բուն իսկ բանաստեղծութեան վրայ ընդհանուր ակնարկ մը նետելը, զի սա է որ ծնունդ եւ սնունդ կը մատակարարէ անոր:*

*Իրաւ է որ, ընդարձակագոյն առմամբ, իմա՛ իբրեւ յղացումն եւ ստեղծում, շատ բաներու կը պատշաճի բանաստեղծութիւնը, եւ գրեթէ ամէն իր եւ երեւոյթ եւ դէպք բնութեան մէջ իւր յատուկ եւ որոշ բանաստեղծութիւնն ունի եւ ի յայտ գալու համար կարօտ չէ միշտ յօդաւոր ձայներու օժանդակութեան, մինչ խոր եւ համատարած լռութիւնն իսկ կրնայ վսեմագոյն բանաստեղծութիւն համարուիլ, ինչպէս ըսուած է, սակայն բնութեան ընծայած այս համասփիւռ երեւոյթը հոգեկան աւելի բարձր վայելքի մ'ամբառնալով՝ աւելի գրաւիչ, աւելի յանկուցիչ, աւելի ախորժ եւ հաճելի ընել առաջնորդուած են մարդիկ՝ թիւ, չափ, կշիռ եւ համադրութիւն եւ ներդաշնակութիւն եւ քայլ եւ գնացք մուծանելով արտայայտութեան մէջ. եւ այս իսկ է բուն բանաստեղծութիւնը՝ յանձուկ միտս, գրական իմացմամբ:*

*Կրնայ, մէկ տեսութեամբ, որձակ բանն ալ բանաստեղծական համարուիլ, եթէ գաղափարաց մէջ բարձրութիւն եւ դըտումներու մէջ յոյզ եւ հանճար կայ եւ արտայայտութեան ձեւն ալ պատասխանէ ըմբռնումներու խորութեան: Բուն բանաստեղծութիւնք սակայն ասոնք չեն, բանաստեղծութեան էական պայմանն է խօսքին մէջ* գնացք՝ չափ *եւ* կշիռ *երեւցնելը:*

*Բոլոր հին արտադրութիւնները որ մեզ հասած են, օրհներգութիւնք Վետայի, Աւեստայի, եւ բոլոր յունական եւ նոցին հետեւողութեամբ հռովմէական վիպերգութիւնները թուաւոր եւ կշռաւոր են:*

*Հանգիտաբար շարժուն եւ գնայուն խօսքին, իմա բանաստեղծութեան, մարդկային հոգւոյն վրայ ըրած ներգործութիւնը եւ սոր անկէ ընդունած եւ կրած տպաւորութիւնը էապէս անծանօթ է մեզ, ինչպէս գաղտնիք են դեռ շատ մ'ուրիշ հոգեբանական ներքին երեւոյթներ որոնց մասին տարակոյսներու՝*

թեթուններու մէջ կը խարխափինք, բայց սա աներկբայապէս ճշմարիտ է որ ո՛ր և է գաղափար, նոյն իսկ հասարակներէն, եթէ արձակ ու սովորական ճամբաներէն շեղելով՝ աւելի արուեստաւոր, աւելի գալարուն՝ ճոխ եւ շնորհալի ձեւով ներկայանայ՝ հոգին աւելի կը յափշտակուի անով եւ տպաւորութիւնն աւելի խոր եւ տեւական կը լինի քան եթէ միեւնոյն խօսքը հասարակ կամ պատմական կամ փաստաբանական ձեւով արտայայտուէր: Ասոր համար է որ խորագոյն հնութիւններէ իվեր չափեալ բանը բարձրագոյն յարգ վայելած է:

Թիւ, չափ, կշիռ,— ահա բանաստեղծական արտայայտութեան պայմանները: Բայց կարծելու չէ թէ ամէն կշռաւոր եւ չափեալ բանը բանաստեղծութիւն է. կան շատ ոտանաւորներ որ թէեւ թուեալ եւ չափեալ եւ նոյնիսկ յանգեալ, որ բանաստեղծութիւն չեն, ինչպէս եւ կան արձակ խօսքեր որք թէեւ գրնացքի հանդիսականութիւն չունին, այլ գաղափարներու խիզախ սլացմամբ, նորատեսիլ պատկերաւորութեամբ իսկապէս գիւտ՝ ծնունդ եւ ստեղծագործութիւն կը ցուցնեն եւ հետեւաբար բանաստեղծութիւն են, ինչպէս վերեւ ալ ակնարկեցինք:

Այս կէտը այնչափ էական է որ Արիստոտէլ մի միայն գիւտի վրայ կը կայացնէր բանաստեղծութիւնը՝ մերժելով կամ երկրորդական համարելով բոլոր արուեստական հեթեթանքները:

Այս հայեացքը, բանաստեղծութիւնը իր բառացի նշանակութեամբ առնելով, կատարելապէս ճիշտ եւ ճշմարիտ է, ուր որ ստեղծում չկայ բանի, ուր հասարակ ըմբռնումներէ եւ հասկացողութիւններէ տարբեր եւ նորանշան եւ բարձր յղացում եւ իմացում չկայ, հոն բանաստեղծութիւն չկրնար ըլլալ եւ անունն ալ անպատշաճ է: Սակայն ոչ նուազ ճշմարիտ է նաեւ որ գիւտը ինքնին միայնակ կարող չէ ազնուացնել ճաշակը եւ դերանուրբ զգացողութեան յագուրդ տալ, եթէ որոշ պայմաններով եւ հոգեգրաւ եղանակաւ արտայայտուած չէ: Բաւական չէ որ բանաստեղծը հոգին յուզէ՝ խռովէ՝ փոթորկէ գաղափարներու նորութեամբ՝ այլեւ արուեստի ամէն հնարքներով պէտք է հոգին գրաւէ՝ հմայէ՝ գերէ: Այս է բանաստեղծութեան թովանքը:

Ուրեմն ինչպէս յամենայնի, հոս ալ թէ՛ հիմ եւ թէ՛ ձեւ՝ պէ՛տք է որ գրկախառն երթան առանց որոյ չիք կատարելու-

թիւն։

Գիւտը հոգեկան բուռն ցնցման՝ ղեղման արդիւնքն է։ Հոգին իր փարած նիւթով ա՛յնպէս զգածուի ՝տարուի՝ հրդեհուի որ սովորական սահմաններու մէջ չկարենայ պարփակուիլ, այլ ճախրէ՝ ալածայ՝ խոյանայ, յայնժամ գիւտը ինքնին անճիգ եւ անաշխատ կուգայ։ Գաղջ եւ գէջ զգացումներով գիւտ կարելի չէ. հրդեհ՝ բորբոք պէտք է։ Այս է որ հրէական մատենագրութեան մէջ Մարգարէականներու տուած է այն բարձրութիւնը եւ այն կորովի շեշտը որով ցայսօր հիացմամբ կը յափշտակուինք։

Այլ սա տակաւին ենթակայական մասն է խնդրոյն, իմա՛ ինչ որ պարտի լինել եւ կրել բանաստեղծը, այլ կա՛յ նաեւ առարկայական մասը, այսինքն թէ ի՛նչ պարտի լինել բանաստեղծութիւնը, իմա՛ ձեւը։ Այս է որ կ՚ընդգրկէ արուեստի բոլոր այն հնարիմաց նրբութիւնները որ գիւտը ախորժ եւ յանկուցիչ ընծայելու կը ծառայեն, փայլելով անոր հաւասար դիրք եւ բարձրութիւն։

Եւ եթէ քիչ մ՚աւելի հեռուն մղենք վերլուծութիւնը, պիտի տեսնենք որ արտայայտութեան այս բոլոր ուշագրաւ եղանակները,– չափ, կշիռ, համեմատութիւն– որ ձեւ կը կոչենք, հնարածոյ եւ մտացածին ալ չեն, այլ նոյն իսկ բնութենէ թելադրեալ։ Բնութեան մէջ ապաքէն ամենայն ինչ, ամենէն աննշաններէն սկսեալ մինչեւ ամենէն բարդ եւ յօղուածոյները համաչափ համեմատութեան մէջ է. սրտի զարկը, աչաց թարթը, ոտից գնացքը, թռչնոց դայլայլը, ջրի խոխոջը, տերեւոց շրշիւնը, հողմոց սոյլը, մինչեւ երկնային մարմնոց վեհափառ ճեմը, ամէն ամէն ինչ չափ՝ կշիռ՝ կապար եւ վերբերական դիրք եւ հայեցողութիւն կը յայտնեն։ Եւ այս է որ Տիեզերական Ներդաշնակութիւնը կը յօրինէ։

Կարելի չէր որ մարդկային հոգին չազդուէր այս ընդհանուր, այս համատարած դաշնակցութենէ։ Ահա այս հետազնին դիտողութեան՝ յափշտակութեան եւ հոգեզգածութեան արդիւնքն է արուեստը որ իր ազգի ազգի հնարքներով՝ երանգներով՝ նրբին եւ հանճարիմաց գեղագանութիւններով աւելի ջինջ եւ պայծառ կը ցոլացնէ հոգեկան կրեյութիւնները, աւելի շօշափելի կ՚ընծայէ պատկերները, աւելի ազդողաբար եւ ճարտարապէս կը թրթռացնէ զգայական լարերը, վերջապէս կու–

տայ հոգւոյն այն ներիմաց հեշտանքը, այն երջանկութիւնը զոր մարթ է ըմբոշխնել այլ բացատրել ոչ երբէք:

Զարմանք չէ ուրեմն որ իվաղուց անտի ամէն բարձր խորհուրդներու, յուզեալ ալեկոծեալ կիրքերու թարգման բանաստեղծութիւնն ընտրուած է: Անով արտայայտուած են բոլոր դիցանուէր փառաբանութիւնք, վսեմագոյն առաքինութեանց նուիրեալ բոլոր գովք եւ դրուատիք, երեւելի անցից եւ դիպաց յիշատակը յաւերժացնող բոլոր հոգեզմայլ հագներգնութիւնք Հոմերոսէն մինչեւ Ֆէրդուսի եւ Բագրատունի: Մեծին Աղէքսանդրի համար կ'ըսուի թէ Իլիականը հետը կը պտըտցնէր միշտ եւ գիշերը սնարին տակը կը պահէր. ինչպէս եւ Խուարիզմի Սուլթան Մահմուտ Ղազնէվին ծանրութեամբ ոսկիով կը փոխանակէր անփոխարինելի Շահնամէն եւ Ներոն իր ամէն արտակարգութիւններուն մէջ ամենամեծ պարծանք կը համարէր նաեւ քերթուածներ յօրինելը եւ Օսմանեան նախկին սուլթաններէն ոմանք ղազէլներ, տիվաններ ձգած են որ չեն արհամարհելի:

Հին Յունաց մէջ մանաւանդ ուր պար եւ երաժշտութիւն այնքան ի յարգի էին, չարժում չկար որ առանց կշռականութեան արտայայտուէր: Քայլի կոհակներուն հետ կ'ելեւէջէին ձայնի վէտվէտումները եւ այս զուգընթացութիւնն այնքան խոր եւ անբաժան ըմբռնուած էր որ չվարանեցան նոյնացնել բանաստեղծութիւնը երաժշտութեան հետ. մին խօսուն երաժշտութիւն՝ միւսը նուագաւոր բանաստեղծութիւն համարելով:

Մինչդեռ այլք, աւելի գրաւուելով բանաստեղծութեան նկարագրական հանգամանքէն՝ ուղեցին նկարչութիւն, նմանահանութիւն տեսնել անոր մէջ եւ խօսուն պատկեր հռչակեցին յաջող քերթուած մը:

Այս վարկածն ալ կատարելապէս ճիշդ է, հատուածոյ եւ անկեան ուղղութիւնն է որ հայեացքները կը դանազանէ. մին ձայնի թովչութեամբ հմայեալ, միւսը պատկերին կենդանութեամբը, կամ այլապէս խօսելով, մին հանճարի գիւտով զմայլեալ, միւսն արուեստի կատարելութեամբ յափշտակեալ. քանզի թէ՛ մին եւ թէ՛ միւսն է բանաստեղծութիւնը, թէ՛ արարչութիւն եւ թէ գեղ եւ շնորհ, եւ այս հանգամանքով է որ գեղարուեստից կարգը դասուած եւ մշակուած է բոլոր հին եւ նոր ազգաց մէջ ի վաղուց հետէ:

## բ. Բանաստեղծութիւն Հայոց մէջ

Մեր, Հայոց մէջ, ալ անտես եղած չէ բանաստեղծութիւնը: Գողթան ըսուած նմոյշները զորս Խորենացին, թերեւս գրականի վերածելով, կ'աւանդէ մեզ, կը ցուցնեն թէ հին Հայք անտարբեր չէին կշռաւոր բանի հմայքին: Ափսո՜ս որ այս մի քանի բեկորները միայն ունինք հինէն:

Ունեցա՞ծ ենք արդեօք ուրիշներ ալ:— Անտարակոյս. քանի որ ժողովրդի մը բերանը երգ մը գտնուած է, սա ինքնին ապացոյց է թէ այն ժողովուրդը սովորած է երգել, զի առանց դարաւոր անցեալի յանկարծածին չկրնար ըլլալ երգելու ախորժը եւ սովորոյթը: Ինչե՞ր արդեօք մէջտեղէն բարձեր անհետացուցեր են ամենածախ ժանիք ժամանակի:

Այնպէս որ հայ ստեղծագործութիւնը մեզ ծանօթ է գրոց գիւտին հետ միայն: Շատ ալ խստապահանջ ըլլալու չենք քանակի մասին, քանզի այն ոսկեդար կոչուած իբր 50–60 ամեայ շրջանին մէջ հազիւ ժամանակ ունեցան Սուրբ Գիրքը եւ այլ կրօնական կարեւոր մատեանները թարգմանելու, այլ թարգմանութիւնն ինքնին կը ցուցնէ որ հասարակ եւ հետեւակ կարողութիւններ չէին ձեռնարկուները՝ այլ վառ երեւակայութեամբ եւ բեղուն մտքով օժտեալ, հեղինակող աւելի քան փոխադրող, մինչ եկեղեցական Հարց գրուածոց մէջ բնագիրն իսկ ուրեք ուրեք գլել անցնել բացատրութեանց ճոխութեամբ եւ բարձրութեամբ: Յունական հրաշակերտներով սնեալ տոգորեալ, անկարելի էր որ արարչական հանճարը սրուած զարգացած չլինէր իրենց մէջ, այլ ժամանակ չունեցան արտադրելու, կամ թէ կորաւ: Կը կարծուի թէ Հոմերոսը ամբողջ կամ մաս մը թարգմանած լինին եւ շատ հաւանական կը գտնեմ որ Խորենացին ինք մղուած լինի այս աշխատութեան որուն ա՛յնչափ հիացում եւ նախասիրութիւն կը ցուցնէ: Բայց ո՞ւր է:— Խաւար եւ լռութիւն:

Եկեղեցական մատենագրութեան պէտք է անցնինք ուրեմն հանճարը եւ արուեստը գտնելու համար, զի այն հեռաւոր դարերուն՝ ամէն ինչ կրօնական ներշնչութեամբ եւ հայեցողութեամբ զգացուած եւ գրուած է, շարական, տաղ, գանձ, մե-

ղեղի, ինչ որ կայ մինչեւ ԺԳ դար եւ աւելի: Տարականներու վրայ մասնաւորելով խօսքը, անոնք, ստեղծագործութեան տեսակէտէն, մի եւ նոյն աստիճանի վրայ չեն. կան որ հզօրապէս յղացուած եւ զօրեղապէս ալ արտայայտուած են անհամեմատ գունագեղութեամբ. կան ալ որ տկար եւ աղկաղկ են, բայց արուեստը առհասարակ ա՛յնչափ փայլ եւ սատար ընծայած է բանին որ նոյնիսկ տկարները իրենց յատուկ շնորհն ունին, գիւտի աղքատութիւնը պատմուճանի շքեղութեամբ քօղարկեալ:

Մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց եւ առ հասարակ սրբոց վրայ եղած ներբողները լոկ պատմական յիշատակութիւններ են ըստ մեծի մասին եւ ստեղծագործութեան նիւթ չեն ընծայեր շատ, թէպէտեւ ասոնց մէջ ալ հիանալիներ կան ուր հանճարը կը փայլի, Հռիփսիմեանց «Անձինք»ը, զոր օրինակ. այլ Ծննդեան, Խաչելութեան, Յարութեան, Հոգեգալստեան եւ մանաւանդ Աստուածածնի վրայ յօրինուածները խանդավառ երեւակայութիւն եւ խորին զմայլում կը յայտնեն: Կան այնպիսի գեղեցիկ գիւտեր, եզական պատկերներ, յաջող ցոլացումներ որ Շէքսփիր, Պայրն, Հիւկօ եւ այլ այս կարգի հանճարներն իսկ կարծեմ չպիտի զժկամակէին ստորագրելու:

Թէպէտեւ ամենուն մէջ ալ հոգւոյ վերասլացում, սրտի զեղում եւ բացարութեանց անբռնազբօս գեղեցկութիւն կայ, բայց երկու մեծ հանճարներ մանաւանդ աչքի կը զարնեն իրենց բանաստեղծական խանդով եւ աւիւնով, Խորենացին եւ Շնորհալին. մին անցեալ դարուց հսկայն, միւսը յետին ժամանակներու տիտանը, կամ թէ ըսենք՝ մին սկզբնաւորող շրջանէն, միւսը փակող:

Տես ի՛նչ յափշտակութեամբ կ՚երգէ քերթողահայրը փրկչական տնօրինութիւնը.

«Որ դասուց երկնաւորաց անիմանալի, այսօր հողեղինաց յայտնեցեր զծածկեալ խորհուրդ,
«Որ բազմաչեայ քրովբէից անտեսանելի, կերպացեալ ըզ մերս ի սրբոյ կուսէն...»:
«Անբաւելին երկնի եւ երկրի ի խանձարուրս պատեցաւ»:
«Որ յանարուեստ աթոռ նստիս բարեբանեալդ ի հրեշտակաց, այսօր ի Սիմէոնի բառնալով ի գիրկս...»:
Ի՛նչ գեղեցիկ հակադրութեամբ կը գոչէ դարձեալ ի գա—

լուստ Հոգւոյն

«Որ գնաս ի վերայ Թեւոց հողմոց, այսօր ի հրեղէն լեզուս
բաժանեալ հանդեար յառաքեալսն, Սուրբ Հոգի»:

եւայլն, եւայլն. զորս շատ երկար պիտի լինէր յառաջ բերել: Նոյն հոգեվառութիւն, նոյն անհատահոս յորդութիւն եւ առ Շը-նորհալւոյն որ կրնանք ըսել թէ ծայրէ ի ծայր կը տիրէ եկե-ղեցական բանաստեղծութեան մէջ: Ծնեալ բանաստեղծ, իր-րեւ յաղբերէ կը բղխին խորհուրդները, եւ գիտերու խորու-թեամբ եւ բազմազանութեամբ եւ արտայայտութեան պարզ եւ անճիգ գեղեցկութեամբ օծութեան դրոշմ մը կը դնէ ամէն ուր որ հպի:

Ի՞նչ աւելի հիասքանչ եւ հրապուրիչ քան այն հակադրու-թիւնները ուր երկու անմատոյց ծայրերը, անհամեմատ բարձ-րութիւնը անչափելի խորութեան հետ հակակշռելով չօչափելի թանձրութեամբ առաջի կը դնէ.

«Պարգեւատուն ամենեցուն
այսօր խնդրի պարգեւս ի Պիղատոսէ,
եւ Արկողն ըզ լոյս որպէս զօթոց
Հաւանի պատիլ ի Ցովսեփայ:»
«Կենդանատուն ամենեցուն
այսօր դնի ի նոր գերեզմանի,
եւ զանձն անմահութեան
կնքի մատանեաւ քահանայիցն:»

Ո՛ր համակեալ բանաստեղծն աւելի հոգեռանդ եւ հզօր չեշ-տով պիտի գոչէր ի ծագել արփւոյն.

«Ցարեւելից մինչ ի մուտս
ի հիւսիսոյ եւ ի հարաւոյ
ամենայն ազգ եւ ազինք
յօրհնութիւն նոր օրհնեցէք
զԱրարիչն արարածոց
Որ ծագեաց զլոյս արեգականն
այսօր յաշխարհս:»

Մանաւանդ այն հրաշահիւս, այն բարձրաթռիչ «լոյս»ը որոյ վրայ ժամանակին «Կոչնակ»ին մէջ ալ ակնարկութիւն մ'ը-րած էի.

«Լո՛յս,

Արարիչ լուսոյ.
Առաջին լոյս.
Բնակեալդ ի լոյս անմատոյց,
Հայր երկնաւոր,
ի դասուց լուսեղինացն օրհնեալ,
ծագեա՛ ի հոգիս մեր
զլոյս քո իմանալի։»

Եղա՞ծ է յղացում ասկէց աւելի բարձր, յափշտակութիւն ասկէց աւելի գերազանց եւ արտայայտութիւն ասկէց աւելի հզօր եւ սրտառուչ։

Բնութեան առանձնաշնորհեալներո՛ւն միայն յատուկ են այս վերելքները։

---

Գալով Տաղերու, Գանձերու, ասոնց մէջ ալ կը փայլի երբեմըն ստեղծագործ ոգին, բայց առ հասարակ թոյլ եւ անջիղ են եւ շատերն ալ ռամկական, շատ մօտաւոր ժամանակներու գործեր որ գաւառիկ գուսանականը կը յիշեցնեն։

Զուարճաբոյր եւ գեղեցիկ է, զոր օր. Ծաղկազարդին հետեւեալ մեղեդին.

«Դաշտ կարմիր վարդով վառեալ
Կանաչազարդ թերթեալ
Հընչին նըւագի առեալ
Ովսաննա օրհնեալ եկեալ։»

Կորովի եւ վսեմ է Նարեկացւոյն

«Ես ձայն զարիծուն ասեմ
Որ գոչէր,
Ի քառաթեւին գոչէր,
Ձայն առնէր ի սանդարամետսն
Ձայն առնէր ի սանդարամետսն։»

Եւ վարդավառին.

«Գոհար վարդըն վառ առեալ
Գոհար վարդըն վառ առեալ
Ի վեհից վարսիցն արփենից։»

Նոյնին դարձեալ՝ Աստուածածնի.

«Աչքն ծով ի ծով
Ծիծաղախիտ ծաւալնայր,

*Ցառաւօտուն,*
*Երկու փայլակնաձեւ արեգական նման:»*

*Գեղեցիկ հակադրութեամբ է նաեւ նոյնին՝ Խաչի*

*«Ծարաւեցաւ Տէրն ի խաչին*
*Որպէս ըզ մարդ*
*Այն որ արար զՈվկիանոս*
*ծով գեղեցիկ,*
*Սամարացւոյն ջուր խնդրելով*
*Աղբիւրըն Տէր,*
*Այն որ արբոյց տիեզերաց զանմահութիւն:»*

*Ցանդգնագոյններէն գիւտ մ'է Բանը անձնաւորելով ըսելը·*

*«Անդ ի մէջ դրախտին*
*Երեք անձինք կային*
*Ադամ եւ Եւա եւ պատուիրանն Տեառն:»*

*Գիւտաւոր եւ գեղեցիկ է նաեւ Նոր Կիւրակէի*

*«Այսօր նոր արեւ հարեալ*
*Ի նորահրաշ արեգակնէ.*
*Այսօր նոր շուշան ծաղկեալ*
*Ի նորատունկ Բուրաստանէ:»*

*Գիւտ եւ Ձեւ զուգախառնեալ, գեղեցիկ եւ զուարճալի արտադրութիւն մ'է նաեւ հետեւեալը, մի քիչ ռամկական.*

*«Հաւիկ մի պայծառ տեսի աննըման,*
*Ի յայն խաչափայտին վերայ աննըման.*
*Աննըմանի ո՞վ նըման,—*
*Դու նըման:*
*«Զթեւս արծաթափայլս ունէր աննըման,*
*Արեգական շողոյն նըման աննըման*
*Զձայնիկն ողորմուկ ածէր աննըման*
*Գաբրիէլեան փողոյն նըման աննըման*
*Զաչերն արտասուօք լընոյր աննըման*
*Առաւօտեան ցօղոյն նըման աննըման:»*

*Կան այնպիսի ուրիշ գոհարներ ալ որ իսկապէս բանաստեղծական են եւ պատիւ կը բերեն հայ մտքին:*

*ԺԳ դարով կը փակուի հին սրբազան շրջանը եւ կը մտնանք գուսանականին, հայ* թրուպատուրներու *եւ* թրուվէրներու *շըրջանին ուր ժողովրդական երգիչները, կամ բուն բառը գործա-*

ծելով՝ «ասող»ները*, կրօնական հայեցողութեանց սահմաններէն մի քիչ դուրս գալով կ'սկսին, առանց երկիւղածութիւնը բոլորովին թօթափելու, աւելի համարձակ թռիչքներ գործել դէպի բուն իրական կեանքը. կ'երգեն սէրը, կ'երգեն գինին, կը յօրինեն ուրախ տաղեր, կը դնեն զուարթ չէչտեր, կ'արբչին բընութեամբ, կ'զմայլին գեղեցկին, մէկ խօսքով սրտի ամէն փափուկ եւ խոր զգացումները եւ կեանքի ամէն նշանաւոր եւ յափըշտակիչ երեւոյթները արժանահունչ թել մը կը գտնան իրենց քնարին վրայ: Այս դարերուն է որ կ'երեւան Թլկուրանցիներ, Ֆրիկներ, Նաղաշներ, Քուչակներ եւ այլ բազմահոյլ գուսաներգուներ որոնց մի քանին արդէն ծանօթացած են հմուտ վերլուծութիւններով:

Ճիշդն ըսելով ժողովրդական տաղասացութիւնը որոշ ժամանակ եւ շրջան չունի, ազգին սկզբնաւորութեանը հետ սկսած, շարունակութեամբը շարունակած եւ պիտի շարունակէ ցորչափ կայ եւ կ'ապրի Ազգը: Նա, այսինքն ժողովրդականն է, ամէն ազգի մէջ, ժողովրդին կեանքին եւ հոգւոյն բուն յայտարարը, ճշգրիտ հայելին ուր կը ցոլան ժողովրդին բոլոր հոգեկան յոյզերը՝ տենչերը՝ ձգտումները՝ լինելութեան կերպերը՝ ընկերական պայմանները՝ դիւցազնական առաքինութիւնները, եւայլն, եւայլն:

Եկեղեցականք պահ մը շեղեցուց տրամադրութիւնները, հոգեւորին եւ աննիւթականին ուղղելով հոսանքը այլ չկասեցուց եւ չէր ալ կրնար կասեցնել քանզի ժողովրդական բղխմունքը նոյն իսկ կեանքի աղբերակունքն են որ թումբ ու պատուար չեն ճանչնար, եթէ այսպէս եւ եթէ այնպէս պէտք է որ հոսին:

Այս է որ կեանքի պայմանները թոյլ տուածին պէս նոր թափով երեւան կուգան Ալիշաններ՝ Պէշիքթաշլեաններ՝ Դուրեաններ՝ Նարպէյներ՝ Պատկանեաններ, եւայլն, եւայլն, առանց լըռեցնելու Սայեաթ-Նովաները՝ Աշըղ Շիրինները՝ Աշըղ Ջիւանները՝ Աղբար Ադամները, այլովքն հանդերձ: Հայրենաշունչ սրտառուչ արտադրութիւններ են այս ամէնը եւ ընտիր սլացք-

---

*Աս է բուն հայ բառը օտար եւ տգեղ «աշուղ»ին որ ի գործածութեան է. զի ունինք ալ «ասողիկ» մականունը արդէն ի հնուց տրուած՝ երգասացի մը:

ներ եւ Հոգեյոյզ նուագներ ունին, այլ տակաւին կը պակսի այն խրոխտ եւ առնացի շեշտը զոր ըմբոստ մի՛տքը միայն կրնայ տալ, այն է որ կը թելադրէ «Ազատ Աստուած»ը, «Թէ իմ ալեւոր»ը, «Տալւորիկ»ը եւ նմանները:

Ազգային երգաստացութեան վրայ վերլուծական ընդհանուր հայեացք պարզել մեր նպատակէն դուրս լինելով՝ կը փակենք հոս այս հակիրճ եւ թերի տեսութիւնը, ցանկալով որ կարող գրչի մը ուսումնասիրութեան առարկայ լինի այս յոյժ բեղմնաւոր նիւթը:

# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## Հին Արուեստ

### Ա· Շարականներ

*Տաղականներուն արուեստին վրայ շատ միտքեր յոգնեցան եւ շատ տեսութիւններ պարզուեցան, առանց սակայն համոզիչ եւ գոհացուցիչ ելքի մը յանգելու։ Զեմ գիտեր իմ հայեացքներէս աւելի բանաւոր եւ համոզկերը պիտի առաջարկուի՝ թէ ոչ, մինչեւ այն՝ բացարձակ է համոզումս թէ այն դրութիւնը զոր հոս պիտի պարզեմ, արդիւնք բազմամեայ համբերատար ուսումնասիրութեան, միակ հնարաւորը եւ վստահելին է լուծելու այս կնճռոտ խնդիրը։*

*Նախ վտարենք յանգը իբրեւ նոր եւ եկամուտ եւ հնոց անծանօթ։ Շնորհալիին յօրինուածքներուն մէջ միայն կը հանդիպինք երբեմն յանգաւորութեան, հին արուեստին մէջ ամենեւին չկայ։*

*Փնտռենք հիմա ընդհանուր չափականութեան մէջ թէ ո՛ր սեռին կամ ձեւին հետեւած են նախնիք իրենց արտայայտութեանը մէջ։*

*Այս տեսակէտով երկու որոշ դասակարգի բաժնուած կը տեսնենք շարականները· մին՝* թուական, *միւսը* կշռական։

### §· 1· *ԹՈՒԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ*

*Այն յորում* թիւ՝ քայլ *եւ* չափ *կայ որոշ այլ զանազան, եւ այս դրութիւնը այնքան միօրինակ եւ հաստատուն որ, ինչպէս երկրաչափական ապացուցութեանց մէջ շատ անգամ պատկերները իրարու վրայ դնել եւ համանմանութիւնը հաստատելու մեթոտն 'ի կիր կ՚առնուի, հոս ալ մարթ է տուները իրարու վրայ փակցնել մաթեմաթիքական ճշտութեամբ։ Օրինակ ըլլայ հետեւեալը·*

*«Որ սիրո՛ղդ էք　　արարչին արարածո՛ց*
*Որ քարո՛զդ էք　　ընդհանուր տիեզերա՛ց*
*Որ պսա՛կդ էք　　ամենայն եկեղեցեա՛ց*
. . — .　　. . . . . . —
*Քրիստոսի　սո՛ւրբ　առաքեա՛լք*
. . .　—　. . —

Բարեխօսեցէ՛ք

. . . . —

առ Տէր վասն մե՛ր

. . . . —

Ուր, ինչպէս կը տեսնուի, իւրաքանչիւր տան անդամները իրենց մէջ անզուգաչափ, այլ միւս տուներուն հետ զուգաթիւ՝ զուգավանկ եւ զուգաչափ են։ Ամբողջ տունը կը բաղկանայ 4 անդամէ, 1· անդամը անայլայլապէս 4 վանկ կը թուէ· 2· 3· անդամները 7, վերջին յանկերգը 5·։

Առնենք ուրիշ օրինակ մը

ա·—— . . . . . . = 2–5

1· Ընդ լու՛ սանալ զուարթնոյն
Ըզ յա՛ րուցեալն օրհնեսցուք
Եւ մա՛ղ թելով խնդրեսցուք
Մաքրե՛լ րզ մեզ ի մեղաց։

———

2· Ընդ խո՛ն կարկեր սուրբ կանանցն
Անմա՛հ բուրմանն անուշից
Խունկս ա՛ ղօթից մատուցուք
Մաքրե՛լ . . . . . .

———

3· Ընդ Քրի՛ս տոսի պահելով
Յաղթօ՛ղ լեցուք փորձողին
Եւ ը՛նդ հրեշտակս երգեսցուք
Փառք ի՛ բարձունս Աստուծոյ։

Ա՛յնչափ ակներեւ է տուներուն եւ համաձայներուն եւ շեշտին եւ գնացքին նոյնութիւնը որ մեկնութեան աւելորդ է։

Եթէ լինէր միայն այս օրինակը, կրնար տարակոյս վերցընել թէ մի՛ զուգէ պատահական լինի։ Այլ երբ կը տեսնեմ որ նոյն տիպի վրայ ուրիշ յօրինուածութիւններ ալ կան, այլ եւս անկարելի է չընդունիլ թէ յատուկ գրութեան մը հետեւուած է։

———

Ուրիշ օրինակ

Այսօ՛ր ցընծան երկնայինքն
Եւ պա՛ր առեալ ի բարձունս
Երգե՛ն զերգըս հոգեւորս

Ցաւո՛ւր ծննդեան Սրբուհւոյն

2· Այսօ՛ր վերինըն Սիոն
Գոչե՛ն զերգըս սրովբէիցն
Զերե՛ք սրբեանն ասելով
Ցաւուր . . . ։
3· Այսօ՛ր աստեղք եւ լուսին
Ընդ ա՛ րեւու հըրճուելով
Գովե՛ն ըզ լոյսն ի Հօրէ
Ցաւուր . . . ։
4· Այսօ՛ր ծերքն օրհնականք
Մանկա՛մբք նորոյ Սիովնի
Երի՛ տասարդք եւ կուսանք
Խընդա՛ն ծննդեամբ Տիրուհւոյն։

5· Այսօ՛ր գունդք առաքելոցն
Եւ պա՛ րըք նախատեացն
Ցաւո՛ւր ծննդեան մօր Բանին
Երգե՛ն ըզ փառս ի բարձունս։

Հոս յանկերգն ալ Մարմնոյն հետ խառնուած է. եւ երկրորդ անդամը չեչտ չունի։

Այլ օրինակ նոյն տիպէն

1· Ուրա՛ խացիր, Սրբուհի
Գաբրի՛ էլի աւետօքն
Որ քա՛ րոզեացն ըզ գալուստ
Արքա՛յ ին Տեառն ի յերկնից։

2· Ողջո՛յն ընդ քեզ, Մարիամ,
Ի քեզ սո՛ւրբ հոգին եկեացէ
Եւ զօ՛ րութիւն Բարձրելոյն
Ի վերա՛յ քո հովանացի։

3· Որ ծնա՛ նելոցն է իքէն
Իսրա՛յ էլի առաջնորդ
Եւ ը՛նդ հանուր քարոզի
Աստուա՛ծ հըզօր անմահ Բանն։

Առաջին անդամին մէջ երկու անգ միայն մի վանկ աւելի

կը թուէ, բայց թեթեւ եւ սահուն վանկերէն, իմաստը չզոհելու համար: Այս ազատութիւնը ուրիշ շատ տեղեր ալ կը տեսնուի եւ դրութիւնը խախտել կամ տարակուսի տակ ձգելու ո՛եւէ հանգամանք չունի:

Առանց նկարագրապէս երկարելու պատկերները, ըսենք որ սոյն չափով եւ արուեստիւ են յօրինուած ճրագալուցի ԲՋ Տէր յերկնից

Օրհնե՛մք ըզքեզ Աստուած
Ընդ ա՛ն մարմնոյն զատուց
Որ ի՛ բարձունս ես բնակեալ
Խնայեա՛ ի քո արարածս:

Նոյն կանոնին եօթներորդ տուր ԲՋ Ողորմեայն
Խոնա՛ր հեցար ի բարձանց
Եւ մա՛ր մնացար ի Կուսէն
Որ նր՛ս տէիրդ ի քումբէս
Արա բիշդ արարածոց:
Եւայլն:

Աղուհացից Գ. Կիւրակէի պկ Օրհնութիւնը Շնորհալիէն
Օրհնե՛մք ըզ քեզ անըսկիզ—
բըն Հա՛յր Որդւոյդ միածնի
Զոր առա՛ քեցեր ի դարձու—
Մըն մա՛ յօրեալ ոչխարին
Դարձո՛ եւ զմեզ ի մեղաց
Որդւո՛յ քո չարչարանօք.
Եւայլն:

Յարութեան բկ Տէր յերկնից մը
Ըզ յա՛ րութիւն Քրիստոսի
Ամե՛ նեքեան օրհնեսցուք
Զի նա՛ միայն Աստուած
Փառա՛ ւորեալ յաւիտեան.
Եւայլն:

Պէնտէկոստէի հինգերորդ տուր բկ Տէր յերկնից
Այսօ՛ր աղբիւր գիտութեան
Բղխեա՛լ ի սուրբ վերնատունն
Յօրմէ՛ լցան տիեզերք
Փնայի՛ւք գետոյն սոսմամբ.

*եւայլն։*

*Խաչի գկ ճաշուն*

*Ցաղթօ՛ղ   եւ գնոր օրհնութիւն*
*Միշտ ի՛   բարձունս երգեսցուք*
*Թագա՛   ւորին Քրիստոսի*
*Հաւա՛   տացեալ ժողովուրդք.*
*եւայլն։*

*Սրբոյն Ցակոբայ ԳՁ Ողորմեայն.*

*Երկը՛ր   պագեմք առաջի*
*Տեւո՛   ղական նըշխարաց*
*Ծըգնա՛   ւորին Քրիստոսի*
*եւ պա՛   տուական վըկային*
*Որ է՛   պարծանք աշխարհի*
*Եւ բա՛   րեխօս վասըն մեր.*
*եւայլն։*

*Եւ յարութեան կարգի օրհնութիւններէն գկ*

*Հաստա՛   տեցան սիրտըք մեր*
*Առ քե՛զ   փառաց Թագաւոր*
*Որ ի՛   յերկնից խոնարհեալ*
*Իջե՛ր   փըրկել զարարածս.*
*եւայլն։*

*Նոյն դրութեամբ եւ արուեստիւ են նաեւ ննջեցելոց կարգէն*

1. *Գայ զօ՛   րութեանց Թագաւորն*
*Ի նո՛   րոգել զարարածս*
*Ի ձա՛յն   ահեղ բարբառոյ*
*Զարթո՛ւ   ցանէ զննջեցեա՛լսն.*
*եւայլն։*

*Եւս եւ*

*Սարսա՛   փելի ոըսամամբ*
*Եւ ա՛   հագին զօրութեամբ*
*Գալո՛ց   է փըրկիչն յաշխարհս*
*Ցարու՛   ցանել ըզ մեռեա՛լսն.*
*եւայլն, եւայլն։*

*Թուով 14 ընդ ամէնը, եթէ աչքէ վրիպածներ չկան, բոլորն ալ նոյն չափականութեամբ*

2–5=7

. —     . . . . .

այլ ոչ նոյն շեշտով եւ գնացքով:

Կը փոխէ արուեստագէտը իր մատը եւ ահա նոր նուագ, նոյնպէս գեղեցիկ եւ նոյնչափ ախորժալուր: Տիպը եւ տրոհումը նոյն է բայց ոչ շեշտը: Հիմա ունինք

. —     . . — . .

Հայր ա՛     ռաքօղ մի՛ ածնին
Որու՛մ     ետուր յա՛շխարհի
Զընտրեա՛լս     քո ի սկը՛զբանէ
Աղաչանօք սոցա
Ողորմեա մեզ.*

2. Փառա՛     ցըն Հօր ճա՛ռագայթ
Որ շնո՛րհ     հեղեր ա՛շխարհի
Լուսա՛     ւորիչ զա՛ռաքեալսն
Աղա. . . . :

3. Կենդա՛     նարար սո՛ւրբ Հոգի
Որ ի՛     լեզուս բա՛ժանեալ
Հանգեա՛ր     ի սուրբ ա՛ռաքեալսն:
Աղաչ. . . :

Այս 2–5=7 տիպը ա՛յնչափ գեղեցիկ, ա՛յնչափ համագոյգ եւ պարերգակ է որ եթէ նոր վարպետ երաժիշտներէն մէկը փորձէր պարի վերածել, տարակոյս չունիմ որ սքանչելի փոլքա կամ քատրիլ մը պիտի ըլլար: Դիտեցէք ոտքերուն քայլը, ամբողջին գնացքը եւ շեշտի տեղափոխութեամբ շարժման ետեւառաջ տեղատուութիւն եւ մակընթացութիւնը եւ բոլորին միասին համակարգ եւ համաչափ ծածանումը:

Այսպէս, այս տիպէն ալ ունինք մի քանի ուրիշներ ալ՝ նոյնչափ գեղեցիկ եւ նոյնչափ արուեստաւոր:

Հոս ալ չդադրիր ստեղծագործութիւնը. նոր պատկեր մըն ալ առջեւնիս կը բացուի նոյն 7 գումարէն, բայց տարբեր բաժանմամբ եւ եղանակաւ

բ. . . . . —     . . . = 4–3

1. Ի հայրաշա՛րժ     ազգերէն

---

*Ցանկերգ կամ Մայր–տողը սովորաբար բուն գնացքին չկպուիր, այլ անդամական տարբեր գրութեան կը հետեւի զոր յետագայս պիտի տեսնենք:

Անհատահո՛ սըդ վըտակ
Կենդանարա՛ր Սուրբ Հոգի
Օրհնեալ ես լո՛յս ճըշմարիտ:

Եկեալ Աստուա՛ծ ճըշմարի տ
2· Այսօր ի սո՛ւրբ վերնատունն
Հրաշազարդեա՛ց զառաքեալսն
Ի լոյս փառա՛ց քոց, Հոգի:

3· Հըրճուողակա՛ն խընդութեամբ
Աշակերտա՛ ցըն լըցեալ
Փառաւորելո՛վ երգէին
Օրհնեալ ես լո՛յս գերագանց:

Սոյնպէս է եւ բուն բարեկենդանի Դկ օրհնութիւնը·
1· Բանն որ ընդ Հօ՛ր յէութեան
Եւ համագո՛յ Սուրբ Հոգւոյն
Ըզ պատկե՛րն իւրական
Խառնեալ ընդ հողանիւ՛թ բընութեանս
Զոր զարդարեա՛լ փա՛ռօք
Եդ ի դրախտի՛ն փափկութեան:

Ուր չորրորդ կազմին առաջին անդամը (խումբը) թէեւ թուով կը տարբերի, բայց կշռականութիւնը նոյնը կը մնայ, ինչպէս վերի օրինակներու առթիւ ալ դիտել տուինք եւ ուրիշ տեղեր ալ պիտի տեսնենք:
2· Յորում ցընծա՛յր զուարճացեալ
Անտըխրակա՛ն խընդութեամբ
Քանզի զԱստուա՛ծ տեսանէր
Միշտ խոնարհեա՛լ ի դրախտին
Յորմէ զլուսո՛յն ճառագայթ
Տըպաւորէ՛ր ի յինքեա՛ն:

3· Վասն որո՛յ աղաչեմ
Մայր Աստուծո՛յ Մարիամ
զՄիածի՛ն քո որդին
Զի շնորհեսցէ՛ ստ աւազակին

Ժառանգե՛լ վերըստին
Մեզ ըզ դրախտի՛ն վայելչութի՛ւն

---

Նոյն կանոնին երկրորդ պատկերը

1. Այսօ՛ր յօրինակ
Նախաստեղծի՛ն Ադամայ
Որ ի դրախտի՛ն փափկութեան
Ուրախանա՛յր ընդ հրեշտակս
Ցընծացո՛ւք ե՛ւ մեք
Ի յօրհնութիւ՛նս հոգեւո՛րս:

---

2. Այսօ՛ր ի խորհուրդ
Աստուածատե՛ղծ նախահօրն
Որ ի պըտղո՛յն ադինայ
Ճաշակելո՛վ զուարճանայր·
Ճաշակեցո՛ւք ե՛ւ մեք
Ըզ պատուիրա՛նս Աստուծոյ:

---

3. Այսօ՛ր ի՛ տիպ
Պատմուճանի՛ն առաջնոյ
Որով պըճնեա՛լ զարդարիւր
Ի փառըս մա՛րդն առաջին
Զարդարեցո՛ւք ե՛ւ մեք
Աստուածայի՛ն օրինօ՛ք:

---

4. Ցընծա՛ Մարիամ
Արեգական արդարութեա՛ն արեւելք
Եւ աղաչեա՛ զսա ի քէն
Ծընեալն Աստուա՛ծ փառըն մեր
Զի դարձուսցէ՛ վերըստին
Զմեզ ի դրախտին ժառանգութի՛ւն:

---

Նոյն չափէն, Զատկի կանոնէն ԴԿ Տէր երկնից մըն ալ ունինք, ա՛յնչափ գեղակերտ, ա՛յնչափ արուեստաւոր եւ, հիմը նոյն պահելով, տեղ տեղ ոտքերու անմիօրինակ բաղադրութեամբ ձանձրոյթը փարատող ա՛յնպիսի վարպետութեամբ որ

չեմ կրնար չյիշատակել ամբողջովին։ Իրապէս հաճոյք մ'է կարդալ եւ լսել այսպիսի տողերը։

. . . — . . .

1· Այսօր հրեշտա՛կք ի բարձունս
Ուրախանա՛ն ընդ մարդկան
Որք իջեա՛լ ի յերկնից
Տան զաւետի՛ս աշխարհի
Ցընծացէ՛ք ա՛յսօր
Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

———

2· Այսօր զուարթու՛նն ի վիմին
Խընկաբերի՛ց սուրբ կանանցն
Փողէր ձայնի՛ւ ցընծութեամբ
Պատմել աշակերտա՛ցն առելով
Ցընծացէ՛ք ա՛յսօր
Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

———

3· Այսօր վիմի՛ն հաստատոյ
Եւ Յոհաննո՛ւ սիրելւոյ
Ընդ հակառա՛կս ընթացեալ
Ի գերեզման յարուցելոյն
Զոր տեսեա՛լ պատմէին
Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

———

4· Այսօր եւ մե՛ք զուարճացեալք
Պայծառացո՛ւք տօ՛նիւս
Ընդ հաշտութեա՛ն Աստուծոյ
Միմեանց արկցուք զիրկըս սիրով
Եւ միաբա՛ն գոչեսցուք
Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

———

գ· 5–5

Զորս գեղեցիկ շարականն ալ այս չափէն ունինք կատարելապէս կանոնաւոր եւ համադրելի

. . . . — . . . . . .

Ալիք յանցանա՛ց զիս ալեկոծեն

Եւ մեղք իմ բազո՛ւմ    զիս յանդիմանե՞ն

---

Արդ զինչ արարի՛ց    մեղուցեալ անձամբս
Որ չեմ ապրելո՛ց    յահագին Հըրո՛յն:

---

Մեղայ քեզ Քրիստո՛ս    Որդի Աստուծոյ,
Շնորհեա զԹողութի՛ւն    բազում յանցանաց իմո՛ց:

---

Ի դէմս Աստուածնի ասացեալ հետեւեալ գոհարիկը որ Պետրոս գետադարձին կ'ընծայուի·

1· Լեառըն    վեմածի՛ն
Աղբիւր    յորդառա՛տ
Բարունակ    ծաղկեա՛լ
Այգի    վայելո՛ւչ
Սրովբէ    հողեղէ՛ն
Տուն    տնօրէնութեա՛ն
Տաղաւար    Հոգւո՛յն
Առ ծընեալն    ի քէ՛ն
Միշտ    բարեխօսեա՛
Անդադար    հայցմա՛մբ
Շնորհել    զԹողութի՛ւն
Մեր    ննջեցելո՛ցն:

Կրնայինք բոլորն ալ միօրինակ . . | . . — տիպի մը վերածել, բայց շատ աւելի գեղեցիկ երեւցաւ անդամատութեանց մէջ զանազանութիւն պահել քան բաւերը չարաչար բաժանել: Նոյնպէս են եւ միւս տուները

2· Փափկութեան    դրախտի՛ն
Բացօղ    բանալի՛
Քրիստոսի    բարձօ՛ղ
Նըմանօղ    երկնից
Սափոր    ոսկեղէ՛ն
Լի    մանանայի՛
Գաւազան    ծաղկեա՛լ
Յարմատոյն    Յեսսեա՛յ
Տաճար    լուսոյ մա՛յր
Առ ծընեալն . . :

3․ Յօղ քաղցրածաւա՛լ
Ցանկալի զուարթնո՛ցն
Նիւթեղէն Սրովբէ՛
Գեղ մարգարտափա՛յլ
Հիմն եկեղեցւո՛յ
Մաքուր աղաւնի՛
Ամպ հովանաւո՛ր
Սուրբ Կոյս Մարիա՛մ
Առ ծննեալն . . . :

---

Նոյն տիպէն դարձեալ, բայց նոր եւ տարբեր շեշտերով․
Ահագին է օ՛
րըն դատա՛ս տա՛նին*
Եւ դողո՛ւ մն
Առաջի՛ բե՛մին
Սարսափին հրեշտա՛կք
Սատանի՛ ե՛րկիր
Ըգնրնջեցեալ օրն մե՛ր
Մի՛ անտե՛ս ա՛ռներ
Յահագին աւո՛ւ-
րըն դատա՛ս տա՛նին
Բարե խօսութեա՛մբ
Սուրբ Աստուա՛ ծա՛ծնին.
Եւայլն:

---

Նոյն կարգէն դարձեալ
Անըսկիզբն Աստուա՛ծ
Սկիզբն արարչութեա՛ն
Իհողոյ ստեղծե՛ր
Ըզ մարդն առաջի՛ն
Գործել եւ պահե՛լ
Ցանպատում ի կեա՛նս
Իսկ ի տուգանե՛լ
Հրամանի քո, Տէ՛ր

---

*Այս անջատումները մերը չեն այլ բուն հեղինակին, չափը պահելու համար:

Ըզ վըճիռ մահո՛ւ
Ի վերայ եղեա՛լ
Հող էիր անդըրէ՛ն
Եւ ի հող դարձցի՛ս
Եւ այժմ աղաչե՛մք
զՍտեղծողդ ամե՛նից
Ընկալ եւ հանգո՛
զՀրաժարեալ հոգի՛ս
յԵօթնաստեղեա՛ ն
Լուսեղէն խորանսն
Ուր ժողովքն են սրբո՛ց
Ի խա ղաղութեա՛ն
Հոգւով հեզութեա՛մբ
յԵրկնի՛ց բա՛րո՛ւթիւնսն.
եւայլն:

---

*Այսպէս եւ հետեւեալ զեղեցիկ Մեծացուացն ի դէմս Աստուածածնի ասացեալ, աներկբայապէս Խորենացիէն*

1. Ո՛վ
Գերահրաշ ծաղի՛կ
Բուրեալ յե՛դե՛մայ
Հոտ անմահութեա՛ն
Ծնընդոցս Ե՛ւ ա՛յի
Ցորմէ սփռեցա՛ւ
Մահ ընդ տի՛ ե՛ զերս
Օրհնութեամբ ըզքե՛զ
Մեծացո՛ւ ցա՛ նե՛ մք:

---

2. Դո՛ւ լուծիչ երկա՛նց
Բարձող ա՛ նի՛ ծից
Տապումն արեւո՛ւ
Լուսոյն ճը՛շ մա՛ րտի
Որով հերքեա՛ւ
Խաւարն ա՛ նա՛ ջին.
Օրհ. ըզքե՛զ . . :

---

3. Ըղձե՛զ
Ունիմըք բարեխօ՛ս
Կոյս անհա՛րսնացեալ
Մայր անարա՛տ
Էմմանո՛ւ է՛լի
Տաճար բանի՛ն
Հօրն երկնա՛ւորի
Օրհ. ըղձե՛զ . . :

---

դ. 4–4

Բայց ամենէն աւելի յաճախեալ ձեւն է 4–4 որմէ ունինք 40ի չափ եւ թերեւս աւելի պատկերներ:

1. Հ. Ո՞ր ըզ նախագրեա՛լսն յառաջագոյն
— Գուշակութեամբ մարգարէիցն
դկ Կատարեցեր հայր երկնաւոր
Տալով ըզկոյսն ի յԱննայէ,
Ըզքե՛զ բա՛րեբանեմք
Աստըւա՛ծ հարցըն մերոց:
. . . . . . . . . .

---

2. Մ. Նահապետացն Աբրահամու
Իսահակայ եւ Յակոբայ
Պարգեւեցար ի յԱստուծոյ
Կոյս Մարիամ դուստրը նոցին
Երանե՛ն ազգ եւ ազինք
Այսօր ըղ ծնեալդ
Ի յԱննայէ:

---

Զորրորդ Կիւրակէի աղուհացից գձ ահ (օրհնութիւն) Շնոր-հալիէն

3. Որ արարե՛ր զօրութեամբ
Զիմանալեացն աշխարհ վերին
Եւ ի նմա՛ հաստատեցեր
Տընտես ըզդա սըս հրեղինացն
Օրհնե՛մք
Զանհասանելի՛ զօրութիւնդ:

Կցորդ նոյնին

4. Որ տիրակա՛նս առ ի քէն
գձ Կարգեալ արնաւս բնութեան մերոյ
Եթող քոյոց պարտապանաց
Թող եւ ըզմե՛ր ըզ յանցանս
Ողորմութեամ բըդ քո, Քրիստոս:

Այնպէս եւ

5. Նորաստեղծեալ բանն յանէից . . . .
6. Արարչական բանին հրաման . . . .
7. Էակա՛ն բան որ ընդ Հօր . . . .
8. Խաւարն անգոյ . . . .
9. Ճառագայթեալ . . . .
10. Զը հանդուրժեա՞լ . . . .
11. Տէրն յետ ստեղծման . . . .
12. Օրհնեմ ըզքե՛զ, Հայր անըսկիզբն . . . .
13. Խաւարեցա՞ւ լոյսն արեւուն
14. Զարչարակցեալ . . . .
15. Նահապետին Աբրահամու
16. Նայեա՛ սիրով . . .
17. Աստուած անեղ . . . .
18. Ժողովեա՛ լքս
19. Ճանապարհ մոլորելոց . . . .
20. Ուահ գործեա՛լ: . . . . :

## ե. 4–4–4–4

4–4ի այս յաճախութիւնք տեսնելով երկար ատեն տարակուսեցայ թէ մի գուցէ Հ. Ա. Բագրատունւոյ ընտրած 2×(4+4)ը առերեւոյթ ինչ լինի եւ 4–4ի վերածելի. ուրիշ բանաստեղծք ալ նոյն կաղապարը յաւանած են: Բայց աւելի ներհունաբէս քննելով իրերը՝ կը տեսնեմ որ իսկապէս գոյութիւն ունի այն վեշտասանեան չափը զոր այնքան պանծացուց հզօր բանաստեղծը:

Աստ ապացոյցը կուտան նախ իմաստից աղխապխումբը եւ պահանջած չափ ու դադարը զոր չենք կրնար անտեսել կամ բռնաբարել առանց հեղինակին արուեստը եղծանելու: Երկրորդ՝ յանգերու գոյութիւնք որ շատ զգալի է Շնորհալիի տաղերուն

մէջ եւ որ անտարակուսելի բացայայտութեամբ կը մատնանշեն չափը:

Վերլուծենք մի քանի օրինակներ.

Առնենք աւագ բչ.ի բձ համբարձին զոր եւ Հ. Ա. օրինակ կը բերէ

1. Որ յանէից գոյացուցեր զքո զարարածս խելղբանէ,
Ի պատկեր աստուածութեան նորդ քո ստեղծեր մարդ ի հողոյ

Ժառանգել    Նրմա՛
զանպատում    բղխեմա՛նան:

2. Իսկ պատրանօ՛ք բանսարկուի՛ն ի դրախտէն արտաքս անկեա՛լ
Ի յաւէժ կենդանութեան նորն մահաբեր պտղով մեռեալ
Մերկացաւ    ըղձաւս
Անբաստեր    լուսոյն:
Ընդ նորին զաստուածեան ըդ մեզ ի փառս յաջակողմեանն
Որով հանցուք քեզ գոհութի՛ւն
Յանդադար յաւիտենին:

Ինչպէս կը տեսնուի, տողերուն մէջ խմբաններ ա՛յնպէս իրարու հետ պայուցած են որ յաջորդաբար ամբողջութիւն մը կը կազմեն եւ այս նկրդաշնակ լուծինր յայտնապէս պիտի ռուժէ երկուքի բաժնելով տողը: Այսպէս, 1. տան 2. տողին 1. անդամին վերջին եզրին մէջ գտնուած Ըին (աստուածութեան նորդ) 2. անդամին անցնելն ալ յայտնապէս կը վկայէ որ այս 2. անդամը 1.ին հետ կցելով միայն չափը պիտի լրանայ:

Նոյն դիտողութիւնն է նաեւ 2. տան 2. տողին մէջ տեսնուած բաժանման վրայ:

Դարձեալ նոյնին յառաջ բերած օրինակներէն
Աւագ ուրբաթի գձ ՀԲին

. . . . . . .

Ժողովեա՛լ Հրէէի չրն կռչեցին արծաթ բազում
Առեալ տարան առ Պիղատոս ատեն ի խա՛չ հա՛ն ի խա՛չ
Չի հայհոյէ է օրինաց:

Յանկերգը 4–4 տողէն կը համարիմ քան անկատար 4–4–4–4 էն ինչպէս եւ վերի բանկերգներն ալ 5+5էն էին:

Այսպէս եւ այլք: Բայց այս 4+4+4+4 չափը այնչափ ալ յա—

ճախուած չէ որչափ կարծուած է: Հ. Բագրատունիին յառաջ բերած օրինակները ուշի ուշով մի առ մի աչքէ անցընելով ինձ այնպէս թուեցաւ թէ մեծ մասը 4–4 պատկերին վերածելի են, այն մի եւ նոյն տրամաբանութեամբ զոր ի կիր արկինք 4–4–4–4ի համար: Օր.

Այսօր անճառ || լուսոյն ծագՈՒՄՆ
Ի փրկութեան || մեր կատարՈՒ
ՄԸՆ խոնարհի || ի վերնատՈՒՆՆ
Ի սուերական || տօնից լըրՈՒՄՆ
Նախ քան զընթրի || ւըն խորհրդՈՑ
Սփածու ղենջակ || արկօղն լուսՈՑ
Եւ ջուր առեալ || ծառայաբար
Զոտըս լուանայր || զաշակերտացն:

Նոյնպէս

Էլից զօրէ՛ն || ըրն Մովսէսի
Զոր խօսեցաւ || ի Սինայի
Եկեր ըզզատն || օրինակԻՆ
Եւ ըզըրազարձն || ընդ եղեգԻՆ
Ըզ հինն ի նո– || րըս փոխելՈՎ
Զըստուերն ի լոյս || ճըշմարտելՈՎ
Փոխան զատինն || ինքըն զոյՈՎ
Գառն Աստուծոյ || ՆըւիրելՈՎ:

Շատ բացայայտ է որ 1. տողին 1. անդամին իմաստը առկախ է եւ երկրորդով միայն լրումն առած է, նոյնպէս եւ 3ին չարունակեալ լրութիւնն է 4.ը, սոյնպէս եւ այլք: Յաւել ասոր վրայ եւ յանգերուն ալ լծորդութիւնը որ ամէն տարակոյս կը բառնայ:

Յառաջ բերուած օրինակներուն մէջ գիտեցի որ կան այն պիտիներ ալ որ ոչ 4–4 ին եւ ոչ ալ 4–4–4–4 ին կը վերաբերին խակապէս, այլ տարբեր չափ եւ դրութիւն կը յայտնեն, թէպէտ եւ մէջ ընդ մէջ երկուքին ալ զարնող նմոյշներ կը գտնուին. զի, ինչպէս ուրիշ տեղ ալ գիտել տուինք, զուտ եւ անխառն դրութիւն հազուադէպ է շարականներուն մէջ, անցում եւ փոխանցումն է անոնց գլխաւոր յատկանիշը եւս եւ գլխաւոր գեղեցկութիւնը:

Զոր օրինակ Ծննդեան հինգերորդ աւուր դկ. Տէր յերկնից

*Որ անտես եւ անքննին**

*Ուր առաջին քառանդա՛մը եւ եթ 2 (4+4) է, իսկ միւսները բոլորովին տարբեր եւ ազատ։*

*Նոյնպէս եւ Ծրագալուցի դձ. Մանկունքը*

*«Մագումըն հրաշալի»*

*«Հոփսիմեանց Անձինք»ը*

*Վարագայ Խաչի*

*«Նըշանաւ ամենայաղթ»ը*

*Գիւտի Խաչի*

*«Ապաւինեցաք ի խաչ քո»ն*

*Մարտիրոսաց դձ. Հմբ.*

*«Սուրբ ես Տէր զօրութեանց»*

*Նոյնպէս եւ աւագ ուրբաթու բձ. օրհնութիւնը*

*«Արծաթասիրութեամբըն...»*

*որոյ վերջին տունն է միայն 4–4–4–4 տիպէն, մնացած բոլորը ազատ։*

*Այսպէս, այս չափէն, հազիւ 16 ի չափ գտայ առողջ եւ պահպանելի, մինչ երկանդամ 4–4 ը մեծամասնութիւն կը կազմէ։ Եւ դիտելի պարագայ մ՚ալ է նաեւ որ այս չափական դրութիւնը, թէ՛ երկանդամ լինի եւ թէ՛ քառանդամ, այնչափ ալ հին գործեր չեն, այլ Մագիստրոսէն եւ մանաւանդ Շնորհալիէն աղին մուտ գտած կ՚երեւին, ինչպէս օրինակները կը վկայեն։*

*Շարականները յօրինողներու մասին Գ. Տաթեւացիէն առնուած պատկերը որ շարականներուն սկիզբը կը դրուի, այնչափ ալ վստահութիւն չներշնչեր ինձ. եթէ բացարձակ գիտնայինք իւրաքանչիւրին ժամանակը եւ հեղինակը, դիւրին էր որոշել թէ ո՛ր չափն էր բուն հինը եւ սեփականը։ Այսու ամենայնիւ, բոլորովին ձեռնթափ ալ չենք. անծանօթներուն մէջ կան ծանօթներ ալ որ կրնան եւ կը բաւեն դէպ ի լոյս առաջնորդել։ Լեզուին յատկութիւնը՝ պարզութիւնը, խորհրդոց բարձրութիւնը՝ վսեմութիւնը, եւ այլ այսպիսի գրական համդամանք բաւական ստարներ են այս կարգի խուզարկութեանց մէջ, թէեւ ոչ անվրէպ։ Այսպէս ուրեմն, յօրինուածքէն եւ քայլընթացքէն դատելով կը մակաբերուի որ համեմատաբար նոր է այս չափը, թէ–*

---

**Սուղարանական ուղղութեան շնորհիւ* անքըննին *գրչութիւնը պարտադիր է հոս երաժշտական շեշտը պահելու համար։*

*եւ անշուշտ շղադրիր հայկական ըլլալէ: Կարծեմ թէ մէկ հատ մ'ալ չպիտի գտնուի բուն հին տուչութեան մէջ որք ուրիշ արուեստի եւ դրութեան հետեւած են, ինչպէս վարը պիտի ցուցընենք:*

*Որչափ սակաւաթիւ ալ ըլլան եւ համեմատաբար նոր, դարձեալ ի պատկառելի նախնեաց են եւ Բագրատունին վարկպարագի բան մ'ըրած չէ այս սեռը ընտրել մշակելով եւ լիակատար հանգամանօք աւանդելով իւր Մշակականի Թարգմանութեան յառաջաբանին մէջ,* Հայկական չափ *անուանելով:*

*Ամէն պատահմունք ի հաշիւ առնելով* 10 *պատկեր կը հանէ, իւրաքանչիւր տողը* 4 *անդամի բաժնելով, ոչ վանկերու թուով՝ այլ ամանակի տեւողութեամբ չափելով, որք են*

4–4–4–4
2–4–4–4
1–4–4–4
4–3–4–4
3–3–4–4
2–3–4–4
4–4–4–3
3–4–4–3
3–4–4–4
2–4–4–3

գ. (3+3) + (3+3) = 12

*Կայ ուրիշ կարճ եւ սիրուն չափ մ'ալ, վերինը, զոր պիտի փորձուէի* 4–4 *ի կամ* 4–4–4–4 *ի մի կծկեալ յապաւեալ կերպը կարծել Հ. Բագրատունիի հետ, այլ իւր ընդունած դրութեան եւ դրած պատկերին մէջ ոչ մի տուն կամ տող գտնուած է լոկ* 3–3–3–3 *ով, այլ ամենուրեք* 4–4 *ն է որ ինքզինքը կը յայտնէ կա՛մ սկիզբը կա՛մ մէջը կա՛մ վերջը: Այնպէս որ, ինչպէս յետոյ պիտի տեսնենք, այն* 4 *ական դրութեան մէջ գտնուած* 3 *ները, ամանակի արժողութեամբ, իսկապէս* 4 *կը հաշուուին. ինչպէս, օր.*

*Ի Հօրէ՛ լոյս ծագեցար*
*Միաւեալ բնութեանս կենդանարար*
*կամ*
1. *Մարգարէի՛ց գերագոյն*

2. Եւ մեծ ի ծնո՛ւն  դըս կանանց
3. Որ ըզ անո՛  ըէնութիւն
4. Աստուածորդւոյն  ի յարգանդի
5. Ծանեար Հոգւովն
6. Աղաչեա՛ զԱստըւած
7. Վարդն մանկանց Եկեղեցւոյ:

Ուր պակասեալ վանկերուն թիւը կը լեցնեն յայտնապէս երկարեալ 3 ները. իսկ ամբողջ չէնքին հիմը կուտան 4 եւ 7 տողերը: Մինչդեռ զուտ 3–3 ի մէջ, թէպէտեւ տեղ տեղ աւելի կամ պակաս ոտքեր կը տեսնուին. այլ տիրող դրութիւնը 3 ն է ծայրէ ի ծայր: Ասոր գեղեցիկ օրինակը կուտայ «Անձինք»ը որ թէեւ քառանդամ այլ ոչ քառավանկ, եւ կը զարմանամ որ ինչո՛ւ Հ. Բագրատունին 4 ականին մէ՛ջ կը յիշատակէ զան ալ, մինչդեռ 4 ի հետ ամենեւին առնչութիւն չցուցներ, եղած շեղումներն ալ աւելի 5 ի են քան 4 ի որ հազիւ մի քանի տեղ ցանցառապէս աչքի կը զարնէ Այս Բնական կարգի վրայ յօրինուած ա՛յնքան ընդարձակ քերթուածի մը մէջ:

Փոխանակ ուրեմն 4 ի եւ այլ անմիաբան տարրներու հետ շփոթելու, աւելի բանաւոր կը թուի ինձ անկախաբար 3...ի դրութիւն մ՚ընդունիլ, կամ քառանդամ, 3–3–3–3 ինչպէս ըրինք, կամ երկանդամ 3+3 = 6, կամ մինչեւ իսկ միանդամ, ինչպէս կայ արդի աշխարհիկ տաղաչափութեան մէջ, իմաստի պահանջման եւ յարմարութեան նայելով: Տաղերուն մէջ պիտի տեսնենք որ եռանդամն ալ կայ (3–3–3) որով աւելի կը հաստատուի 3ի անկախ դրութիւնը եւ ճոխութիւն մ՚աւելի բարդուած կ՚ըլլայ Հայրենի ժառանգութեան վրայ: Ջէ՞ որ Հ. Բագրատունին ինքն ալ կը յայտարարէ թէ «ընտրանաւ, առկաւս ի բազմաց» առած է նախնի տաղաչափներէն:

---

Վենետիկի Մխիթարեաններէն Հ. Աթանաս Տիրոյեան, Բազմավէպի 1912 Հոկ. Նոյ. միացեալ թուոյն մէջ 4 ական դրութեան եռանդամ մէկ հակիրճ ձեւն առաջարկեց, մետասանատեան, հետեւեալ պատկերով

6–4–3
2–4–3

3–4–3
4–4–3

միշտ ամանակի (սուր կամ երկայն) դրութեան վրայ յենլով՝ վանկերուն համարողական քանակը լրացնելու համար. կամ իր իսկ խօսքերով.

«Այս տողերուն վանկերու թիւը կը փոփոխուի ընդ մէջ 8 ի եւ 11 ի, բայց 8, 9, 10 վանկեր պարունակող տողերն համազօր եռանդամ բաժանմունք կ'ունենան 11 վանկեր պարունակողներուն հետ. ինչպէս հայկական մեծ չափը՝ քառանդամի կը բաժնուի՝ 13–16 վանկեր պարունակող խառն տողերով»:

Եւ իւրակերտ աշխարհաբար օրինակ մ'յառաջ կը բերէ «Տասսոյի Ազատուած Երուսաղէմի»էն.

«Նկարագիր պատերազմի դաշտի մը
մարտակռիւէ մը վերջը»

Ա՛յսպէս իրարու դէմ կռուին
Յառաջ կը տանէին, եւ բախտին
Կշիռքն անորոշ կը տատանէր զուգամէտ
Երկիւղի եւ յուսալիր զգացման մէջ:
Դաշտը ծածկեր են խորտակուած բիւր տէգեր,
Ջախջախուած վահաններ, զէնք ու զրահներ,
Եւ սուրեր՝ կուրծքի լանջքի մէջ մխրուած,
Կամ գետնի վրայ ցիրուցան տարածուն»:
Եւ այլն.

Գեղեցիկ են թէ՛ խորհուրդը եւ թէ՛ օրինակը: Բնական էր որ մանր եւ գողարիկ դրուագներուն համար ալ կարճ եւ թեթեւ յեղանակ մ'ունենար հայկական չափը: Շնորհաւորելի է յարգելի հեղինակը այս պէտքը հոգալուն համար: Հայ տաղաչափներուն ձեռքը դրութիւն մ'աւելի դրուեցաւ ասով:

Մետասանոտնեան չափը մեր մէջ նորութիւն մը չէ թէեւ, ունինք անկէ բաւական տարբեր պատկերներ.

5–6
6–5
4–4–3
3–4–4

զորս ի յետագայն պիտի տեսնենք, այս չափական ձեւը սակայն կը պակսէր.

## §. 2. ԿՇՌԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ

Այս դրութեան լաւ խելամտելու համար պէտք է յուշի ունել եղանակաւոր ութ հիմնական ձայներու կատարած դերը, քանզի անոնց տուած ուղղութեամբը յօրինուած են բոլոր շարականները. անո՛նք ծառայած են իբր ձուլարան՝ ձեւ եւ մարմին տալու խօսքին: Մեր արդի երգահանութեան մէջ եղածին նման, նախ երգը՝ ապա եղանակը յօրինուած չէ, այլ խօսքը եղանակին վրայ չափուած ձեւուած է. ան է որ խօսքին շարժումները, գնացքը, հանգիստը, համբոյրը, ամանակի տեւողութիւնը, ձայնի ելեւէջը, շեշտին որակը եւ այլ այս կարգի հանգամանքները կ'որոշէ՝ կը տնօրինէ եւ կը կերպաւորէ: Եւ աս այնչափ ստոյգ եւ աներկբայելի է որ մէկ ձայնի (եղանակի) վրայ յօրինուած շարական մը անկարելի է ուրիշ ձայնով եղանակել. իսկոյն թէ՛ իմաստները կը շփոթին եւ թէ երաժշտական գնացքը կը խանգարի:

Ասոր տարակուսող մը եթէ գտնուի, թող ինքն ալ փորձէ տուն մը շարական ըսել, առանց նախապէս հաստատեալ ձայներու հետեւելու. շուտով պիտի զգայ անկարելիութիւնը, քանզի ոչ մէկ եղանակին պիտի պատշաճի յօրինածը: Շարական գիտցողներուն չէ հրաւէրս, անոնք անպատճառ կ'ազդուին:

Ասոր հաւասար երկրորդ գործօն (փէfpop) մըն ալ կայ որ հիմ եւ վարիչ կը հանդիսանայ այս դրութեան, այն է իմաստի պահանջը որ գոյգ ընդ առաջնոյն, նուագականին, երկու խարիսխները կը կազմեն այս արուեստին: Եղանակ եւ իմաստ թէպէտ ամէն տեղ ուշադրութեան առնուելու պայմաններ են, բայց հոս անոնք եւ անո՛նք միայն են ձեռնտու՝ քերթուածին բնութիւնը եւ հանգամանքը որոշելու: Այնպէս որ, ուր մենք հարեւանցի նայուածքով խառնակութիւն՝ անկարգութիւն եւ անկանոնութիւն միայն կը տեսնենք եւ չենք կրնար որոշ չափի եւ ձեւի մը կապել, խորագնին գիտողութիւնը ա՛յնպիսի արուեստ մ'ի վեր կը հանէ որ շնորհքով եւ հրապոյրով ամենէն կատարեալներուն ասպարէզ կը կարդայ:

Ոտքերու թիւ, հատածներու՝ անդամներու հաւասարաչափութիւն եւ մետրական կաշկանդում չկայ անոնց մէջ, այլ ազատ գնացք, անհամաչափ պէսպիսութիւն, կարճ եւ երկար չափերու

*գեղեցիկ զուգախառնութիւն, սակայն եւ այնպէս՝ զուգայարմար կշռականութիւն* (քատանս), *քայլ եւ գնացք։*

*Եղանակը կ'որոշէ հանգրուանները որ պարտաւորիչ են եւ ուր անպատճառ պէտք է դիմէ խօսքը, այլ միջոց հեռաւորութիւնը մէկէն միւս հանգրուանը նոյն եւ հաւասար չէ եւ այս զանազանութիւնը դնողը դիտեալ իմաստն է որ լրանալու համար այս կամ այն քանակի կամ տարածութեան պէտք եւ պահանջ կը դնէ։*

*Լուսաբանենք մի քանի օրինակներով։*

*Ահա Վարդավառի Կանոնէն բկ օրհնութիւն մը·*

1· *Ճառագայթ փառաց Հօ՛ր*
2· *Որդիդ միածին*
3· *Որ ըզ լոյսդ անվայրափա՛կ*
4· *Մարմնով պարագրեալ,*
5· *Այսօր ի Թափօ՛ր*
6· *Փառօք փայլեցե՛ր։*

*Կշիռն է*

. . . . . — = 6
. . . . . = 5

*որ կը կրկնուի, նոյն եւ նման, 3ին եւ 4ին·*

*Իսկ հաւասարակաց յանկերգն է·*

. . . . — = 5

*որ կը կրկնուի նոյնպէս յաջորդ անդամին։*

*Երկրորդ տուն*

1· *Որ անտես սրովբէից անհա՛ս*
2· *Ի վեր քան ըզ բան,*
3· *Ծառայի կերպիւ պարածածկեա՛լ*
4· *Ըզ լոյսդ անըստուեր,*
*Այսօր ի Թափ...*

*Ասոր ալ* 1· *անդամին կշիռն է*

. . . . . . . . — = 8
2 *ինը՝* . . . . . -5
3 *ինը՝* . . . . . . . . — = 9
4 *ինը·* . . . . . — 5
*Այսօր ի Թափ...* — 5

*Կցենք եւ երրորդ տունը*

1. *Որ հրեղինացն անմերձենալի՛*
*Հուր աստուածութեանդ*
*Ի հողեղէնս խոնարհեա՛լ*
*Լոյսդ արփիական*
*Այսօր ի Թափ...:*

*Վանկի հաշուով ասոր ալ 1ին անդամը կը տեսնենք*

| | | |
|---|---|---|
| . . . . . . . . . — | | = 9 |
| 2*ինը* . . . . . | | = 5 |
| 3*ինը՝* . . . . . . . — | | = 7 |
| 4*ինը* . . . . . | | = 5 |

*Ցանկերգը նոյն:*

*Անդամատութիւնները, ինչպէս դիւրին է խելամտել, բնաւ կամածին քմածին չեն, այլ նոյնիսկ առաջնորդող ձայնի (բկ) տուած ուղղութեամբ են որոնց անբաժան յարակցութեամբ կը դաշնաւորին նաեւ իմաստները:*

*Արդ՝ կը տեսնենք որ համապատասխանող անդամները*

*Ա. քառեակի 1 տողին մէջ 6 ոտք կը թուեն,*
*Բ. ին մէջ 8,*
*Գ. ին մէջ 9.*

*Բայց այս անզուգաչափութիւնը իմաստի բերմամբն է մի-այն եւ գնացքի կանոնաւորութեան ամենեւին չտանաեր, երեքն ալ դարձեալ, թէեւ տարբեր միջոցաւ եւ ժամանակաւ, միեւնոյն առաջին հանգրուանին կը հասնին եւ զիրար կը գտնեն:*

*Նոյնը կ՚ըսենք եւ երկրորդ անդամին համար որ*

*Ա. ին մէջ 5*
*Բ. ին մէջ 9*
*Գ. ին մէջ 7 վանկ կը թուէ:*

*2 եւ 4 անդամները ամենուն մէջ ալ նոյն են (5–5), իմաստը լիակատար լինելով:*

*Մայր զուգեակին վրայ չենք խօսիր, նա հասարակայ է, 5–5 ով ձեւացած:*

*Առնենք ուրիշ օրինակ մը*

*Ա.*

1. *Որք զարդարեցի՛ն*
2. *Տընօրինաբա՛ր*
3. *Զիմաստս ա՛նե՛ղին*

4· Հաստատել յերկրի՛
9· Ըզ գիր կե՛նդա՛նի
0· Հովուել ըզ հօ՛տ
7· Նոր Իսրա՛յ է՛լի
8· Երգով քաղցրութեան հընչմա՛մբ
9· ՁԱստուած օ՛րհնե՛ացո՛ւք։

Կրնայ ըսուիլ որ 5–5 չափու վրայ յօրինուած է այս ակ օրհ- նութիւնը՝ ի գովեստ Թարգմանչաց, զի ա՛ն է ընդհանուր գը- նացքը կառավարողը, բայց, ինչպէս կը տեսնուի, ոչ հաւասար քայլերով միշտ։ Սակայն եւ այնպէս համահանդիպութեան մէջ զուգակշռեալ եւ համապատշաճեալ են թէ՛ իբր ամանակ եւ թէ՛ իբր չափ։

1· ընդ 2· ի
3· » 5· ի
4· » 8· ի
6· » 7· ի

Ասոնց մէջ 6 ը եւ 4 ը ամանակի երկարութեան իրաւամբ կարգ առած են չարքին մէջ, կամ թէ ըսենք 8րդը = 4րդին, մի- ջեղչ վանկով՝ իմաստի բերմամբ։

Մի եւ նոյն կաղապարի մէջ ձուլուած են նաեւ յաջորդ տու- ները․

Բ․

| | | |
|---|---|---|
| 1· Որ զերկրաւո՛ ր | . . . —— | = 4 |
| 2· Մեծութեան փառա՛ ց | . . . . —— | = 5 |
| 3· Խաւար կո՛ չե՛ցին | . . —— —— | = 5 |
| 4· Ապաւինելով ի յո՛յս | . . . . . . . —— | = 7 |
| 5· Անմահ փե՛ սա՛յ ին | . . —— —— . | =5 |
| 6· Անճառ բանի՛ ն | . . . —— | = 4 |
| 7· Արժանի՛ Լ՛ղեն | . . —— —— . | = 5 |

Երգով քաղց․ . .

Համեմատէ նոյնպէս անդամ առ անդամ հետեւեալ գկ մե- ծացուցէն․

Ա․

· Ա՛ ստուածածին ամպ լո՛ւ սա՛ ւոր
2· Որ ըզ ցօ՛ ղըն կենաց հեղեր յերկիր բանա՛ ւո՛ր

3· Ե՛ւ զնախամօրն շիջուցեր պարտեացն ըզ հուր
Անդադար ձայնի՛ւ զքեզ բարեբանեմք
Եւ Հոգեւոր երգո՛վ մեծացուցանե՛մք:

Բ.

1· Տե՛   ղի անտանելի՛ բա՛   նին
2· Եւ երկի՛   ր վայրափա՛   կ յորում լոյսն ագանիցի
3· Ե՛ւ, արեւելք արեգականն արդարութեան
Անդադար եւայլն· :

Գ.

1· Զքե՛զ կատարումն մարգա՛րէ՛ից
2· Կուսակա՛ն քո ծնընդեամբ որով բնութեանս քակեցան
օրէ՛նք
3· Հրա՛   բուն սերոբըն փոխադրեալ ի լուսաճեմ խորանսն
Անդադար եւայլն· :

2· եւ 3· տողերուն արձականման երկարութիւնը տեսնելով գուցէ մտածուի որ աւելի լաւ է իբր հատած ընդունել զանոնք եւ անդամներու բաժնել, սակայն կամայականութիւն կը մտնէ յայնժամ եւ իմաստից սերտ կապակցութիւնը միշտ ալ թոյլատու չէ այդ փորձին: Լաւագոյն է բնականին մէջ պահել զանոնք եւ իբր անդամ ընդունել, որչափ ալ երկար լինին, քանզի այդ երկարութիւնը տուողը իմաստի անբաժանելի միութիւնն է զոր չենք կրնար տարանջատել: Արդէն անդամներուն այս անհաւասար գնացքին մէջ է այս չափական տեսակին յատկանիշը, բաւական է որ կայանները նոյն են՝ երաժշտական վարչութեան ենթարկեալ:

Նշանակելի է որ անդամոց այս անհաւասարութիւնն ալ ամէն տեղ միեւնոյն կերպով անզուգակշիռ ազատութեամբ չէ· ո՛ր տեղ աւելի ո՛ր տեղ պակաս զգալի է եւ կան դէպքեր ալ որ ամենեւին համեմատելի եւ վերադրելի են, թէ՛ թիւ եւ թէ՛ եղանակ:

Ահա Աշխարհամատրան Կիրակէի Կանոնէն բկ· Ողորմեա մը որ հիանալի տիպ կը ներկայացնէ այս համաչափեալ նոյնութեան·

1· Իջեր, Տէ՛ր, եւ մա՛ր   մնացար ի կուսէն
Եւ զհողեղէն բնութիւնս ազա՛   տեցեր ի մեղա՛ց:
2· Ելեր, Տէ՛ր, բեւե՛   ռեցար ի խաչին,
Ըզ մեռանել յանձն առե՛ր կենդա՛   նատու մեռելո՛ց:

*3· Եղար, Տէ՛ր, ի նո՛ բափոր ի վիմի·*
*Եւ մատանեաւ կընքեցա՛ր, գանձըդ կենաց աշխարհի՛:*
*4· Յարեար, Տէ՛ր,*
*աւե՛ր բեկեր ըզ դըժոխս,*
*Ի յերկինըս համբարձա՛ր*
*եւ ը՛նդ աջմէ Հօր նըստար:*

*Փակցուր ամէն մէկ տունը իրարու վրայ, ոչ ուրեք կ՚աւելնայ կամ կը պակսի, նոյն տիպ եւ կաղապարը պիտի ելլէ:*

*Դարձեալ, Պէնտէկոստէի հինգերորդ աւուր բկ· Ողորմեայն*

*1· Իջեր, Տէ՛ր, ողո՛ր*
*մութեամբ քո յաշխարհ,*
*Եւ ըզ մեռեալ բընութի՛ւնս*
*Ի կեա՛նս վերափոխեցեր:*

---

*2· Ելեր, Տէ՛ր, առ Հա՛յր*
*Փառօք ի յերկինս*
*3· Եւ մըխիթարիչ առաքեցո՛յն առա՛*
*քեցեր սուրբ զՀոգիդ:*
*4· Բացեր, Տէ՛ր, այսօ՛ր*
*ըզ գանձդ երկնային*
*Եւ բաշխեցեր առատապէ՛ս պարգե՛ւս*
*աղքատ բընութեանս:*

*Սոյն միեւնոյն տիպի վրայ էր նախապէս յիշատակեալ Առաքելոց ակ ձայնն ալ*

*Որ սիրո՛ղդ էք, եւայլն:*

*Բայց այս տիպը սովորականը չէ, հազիւ մի քանի այսպիսի գոհարիկներ ունինք, մնացեալ բոլոր շարականները, թուականներն ի բաց առնելով, անհամաչափ զուգակշռութեան վրայ կառուցուած են, եղանակաւ միայն հաստուածեալ եւ իմաստով անդամատեալ:*

*Բովանդակելով ուրեմն մինչեւ հիմա տրուած նմոյշները՝ կը տեսնենք որ շարականաց արուեստը, ինչպէս ցուցուցինք, երկու որոշ սահմաններու մէջ կը յածի,* թուական *եւ* կշռական: *Թուական անոնք որ քայլ եւ գնացք կը յայտնեն եւ մի յատուկ չափով կ՚ընթանան· իսկ կշռական՝ անոնք որ թիւ եւ որոշ չափ չեն ճանչնար, այլ երաժշտական ուղղութեամբ եւ իմաստի գե-*

կով միայն կը կառավարուին, բայց ոչ անկարգ եւ անսանձ, այլ մի յատուկ կչռականութեամբ որ համեմատելի անդամները կը զուգադաշնէ եւ վարող եղանակի զօրութեամբ ի մէտ եւ ի կշիռ կը բերէ։

Սակայն արուեստին հնարաւէտութիւնն ա՛յնչափ է որ այս որոշ սահմաններուն մէջ ալ չմնար այլամերժ գձձութեամբ, մէկ դրութեան միայն կապուելով, այլ բազմազանութիւն կը մտցնէ ազատ թռիչքներ գործելով մէկէն միւսը եւ երկուքն ալ գեղարուեստօրէն զուգախառնելով եւ ընդելուզելով միեւնոյն քերթուածին մէջ, ճիշտ ինչպէս արդի եւրոպական բանաստեղծութեանց չափերուն մէջ կը տեսնուի·

Օրինակ ըլլայ հետեւեալ 4–3 բկ Տէր յերկնիցը

Ա·

1· Այսօր հրեշտակք ի բարձունս
2· Ուրախանա՛ն ընդ մարդկան
3· Որք իջեա՛լ ի յերկնից
4· Տան զաւետի՛ս աշխարհի
5· Ցընծացէ՛ք ա՛յսօր
6· Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

Բ.

1· Այսօր զուարթո՛ւնն ի վիմին
2· Խընկաբերի՛ց սուրբ կանանցն
3· Փողէր ձայնի՛ւ ցընծութեամբ
4· Պատմել աշակերտա՛ցն ասելով
5· Ցընծացէ՛ք ա՛յսօր
6· Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

Գ.

1· Այսօր վիմի՛ն հաւատոյ
2· Եւ Յօհաննո՛ւ սիրելւոյ
3· Ընդ հակառա՛կս ընթացեալ
4· Ի գերեզման յարուցելոյն
5· Զոր տեսեա՛լ պատմէին
6· Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց։

Դ.

1· Այսօր եւ մե՛ք զուարճացեալք

*2· Պայծառացո՛ւք տօ՛նիս*
*3· Ընդ հաշտութեա՛ն Աստուծոյ*
*4· Միմեանց արկցուք գիրկըս սիրով*
*5· Եւ միաբա՛ն գոչեսցուք*
*6· Քրիստոս յարեաւ ի մեռելո՛ց:*

*Մտադիր բաղդատէ հիմա այս չորս տուներն ալ տող առ տող, պիտի տեսնես որ նոյն չափ եւ կշիռ, նոյն շարժ եւ դադար, նոյն շեշտ եւ բութ, միեւնոյն* քանվաս *ի վրայ ձեւուած չորս համանման պատկերներ կը ներկայացնեն երկու տարբեր տիպէ, մին 4–3՝ միւսը 4–4, իւրաքանչիւրը իր համապատասխան տողերուն մէջ տիրական:*

*Սոյնպէս եւ գեղեցիկ զուգախառնութիւն է 2–5 ի եւ 5–5 ի, երրորդ կր·ի Ազուհացից հետեւեալ բձ· Համբարձին*

*Ա·*

*1· Համբա՛ռ*
*2· նալով զա՛չս մեր*
*3· Կարդա՛մք*
*4· առ քեզ, մարդասէր,*
*5· Որ յահեղակերպ*
*6· Աթոռըդ նըստիս:*

*Բ.*

*1· Ընդ հո՛*
*2· վաննեաւ աջոյ քո*
*3· պահեա՛*
*4· ըզ մեզ բազմագութ*
*5· Որ յանմարմնական*
*6· Զօրացըդ գովիս:*

*Գ.*

*1· Փա՛*
*2· ռը՛ք քեզ, Աստըւած*
*3· Փառա՛*
*4· ւորեալ յաւիտեան*
*5· Փառք ամենազօ՛ր*
*6· Տէրութեանըդ քո՛:*

Դիտմամբ երկարեցինք օրինակները՝ աւելի բացայայտ ընծայելու համար նիւթը: Իմ համոզումս է թէ այս մտօք եւ ուղղութեամբ եւ եթ կարելի եւ բանաւոր է իմանալ եւ մեկնել շարականներու արուեստին մինչեւ ցարդ անհաս մնացած գաղտնիքը:

Ուրիշ ո՛եւէ մեկնութիւն կամ վերլուծութիւն ինձ օտարոտի եւ իրականութեան անհամաձայն կը թուի:

* * *

Վերի տողերը գրուած էին երբ պատահմամբ եւ բարեբախտաբար «Բազմավէպ»ի 1907 Յունիս թուոյն մէջ, մի եւ նոյն նիւթին վրայ հմտալից յօդուած մը աչքիս ինկաւ, Մեծ. Հ. Կ. Սահակեանէ ստորագրեալ, «Ազգային հին բանաստեղծութեան տաղաչափական գաղտնիքը» վերտառութեամբ:

Ուրախ եմ յայտարարելու որ հեղինակաւոր ձայն մի եւս կուգայ ոյժ տալ մեր ընդունած անդամական դրութեան որ անոր ալ հիմը կը կազմէ զոր եւ «ամանակեալ տաղաչափութիւն» կը կոչէ, իւրաքանչիւր անդամը մէկ մէկ ամանակ ընդունելով ըստ Մագիստրոսեան իմացման: Մենք սոյն բառը իբր հասարակ սովորական իմաստով առած ենք միշտ, իմա՛ տեւողութիւն ձայնի: Ասիկա խնդիր չէ, էականը դրութեան հասկացողութեան վրայ է: Այս մասին իրարմէ բաւական կը տարբերինք: Ըստ մեզ, Հ. Սահակեանը քողին մէկ ծայրը միայն վերցուցեր է, ամբողջ տեսարանը հոյանի եւ բացայայտ չէ, ի մթան մնացած մասեր կան որք պարզուած չեն որով եւ մասնակի կը մնայ աշխատութեան արժէքը: Հ. Բագրատունիին աւելի ակնարկելով իւր համեմատութեանց մէջ, կը ջանայ անոր ընդունած եւ քարոզած Հայկական չափերուն հետող պարագաները անդամական դրութեամբ լուսաբանել:

Սա ինքնին արդէն յաջող փորձ մ՚է դէպ յառաջ, բայց միակողմանի է եւ ոչ առհասարակ ամենուն պատշաճելի եւ ոչ ալ անդամատութիւնները հաստատուն եւ դրական կանոնի մը վրայ յեցած են, այլ, եթէ տեղ տեղ յարմարին ալ, շատ տեղը խախուտ եւ կամայական կը մնան, զի եղանակի տուած ուղղութիւնը եւ իմաստի պարտադիր պահանջը բաւական ի հաշիւ առնուած չեն եւ ոչ ալ չափու եւ կշռի մէջ զանազանութիւն յայտնուած է որ, ինչպէս տեսանք, շարականներու արուեստին գե-

բագոյն գեղեցկութիւններէն մին կը կազմէ։

Բացատրենք մի քանի օրինակներով․

Առնենք Ծննդեան դկ․ «Խորհուրդ մեծ»ը զոր եւ ինքն Հ․ Սահակեանը կը յիշէ եւ կ'անդամատէ նախ ըստ Բագրատունւոյ

Խորհո՛ւրդ մեծ
եւ սքանչելի
որ յայսմ աւուր
յայտնեցաւ։
Հովիւքն երգեն
ընդ հրեշտակս
տան աւետիս
աշխարհի։
Ծընա՛ւ
նոր արքայ
ի Բեթլեհէմ
քաղաքի
Որդիք մարդկան
օրհնեցէք
զի վասըն մեր
մարմնացաւ։

Այս տողերը հայկական կանոնաւոր տաղաչափութեամբ կը գտնէ եւ կը յաւելու

Անբաւելին — երկնի եւ երկրի —
ի խանձարուրս — պատեցաւ,
Ոչ մեկնելով — ի հօրէ —
ի սուրբ այրին — բազմեցաւ։

Բայց հոս դժուարութիւն մ'ընդ առաջ կ'ելլէ վերջընթեր տողի երկրորդ անդամ'ը (երկնի եւ երկրի) 5 վանկէ կազմուած է որ զարմանալի կը թուի հեղինակին որ անշուշտ յօրինողի անճարտարութեանը վերագրելի չէ, կ'ըսէ։

Նոյն անկանոնութիւնը կը կրկնուի քիչ մը վարը

Այսօր ցընծան երկինք ի վերուստ մեծապայծառ աւետեօք
Եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փըրկութեան։

Ուր «երկինք ի վերուստ»ը զարձեալ հնգավանկ է։ Եւ աւելի վարը

ի Հօրէ ծագեցար յուսաւորել զարարածս

Արդարութեան արեգակըն Տէր փառք քեզ։

Հոս ալ «արեգակըն Տէր»ը 5 վանկով կը խանգարէ տողը։

Արդ՝ ի՞նչպէս մեկնելու է այս խոտորումները Բագրատունեանչափերէն զոր կը բեկանեն։

Հ. Սահակեան ամանակ ի դրութեամբ կը լուծէ կնճիռը որով իրաւ վանկաթիւը կը կորսնցնէ իւր կարեւորութիւնը բայց անդամատութիւնը կը մնայ միշտ կամայական։

Ի՞նչ իրաւացի փաստի վրայ յենլով, գ. օ., պարտաւոր ենք ըսել.

Ոչ մեկնելով | ի Հօրէ...

եւ ոչ թէ

Ոչ մեկնելով ի Հօրէ |

որ աւելի սերտ պիտի պահէր իմաստը։ Նոյնպէս եւ

Ի Հօրէ | ծագեցար |

եւ ոչ թէ

Ի Հօրէ ծագեցար |

Ծարէ՛ հիմա նոյն տողերը մեր դրութեամբ, տես ի՛նչպէս ձայները կը նուագաւորուին եւ իմաստները հետեւականութիւն կ՚առնեն

Խորհուրդ մե՜ծ եւ սքանչելի՜
Որ յա՜յ սմ աւուր յայտնեցաւ
Հովիւքն երգեն ընդ հրեշտա՜կս
Տան ա՜ ւետիս աշխարհի։
Ծընա՜ւ նոր արքայ
Ի Բեթլեհեմ քաղաքի
Որդիք մարդկան օրհնեցէք
Զի վա՜ սն մեր մարմնացաւ։
Ա՜նբաւելին երկնի եւ երկրի
Ի Խա՜ն ձարուրս պատեցաւ
Ոչ մեկնելով ի Հօրէ՜
Ի սո՜ւրբ այրին բազմեցա՜ւ։

Իւրաքանչիւր տուն 4 անդամէ բաղկացեալ, եւ թէեւ վանկերու հետ կապուած չէ. բայց եւ այնպէս զարմանալի է որ 7–7 թուելով յառաջ կ՚երթայ գնացքը, երկու տեղ միայն օգտելով որ սակայն երաժշտական շեշտի տակ անզգալի կը մնայ։

Եւ այդ 7 Թիւն ալ կրնանք թէ՛ 2–5 ընդունիլ, ինչպէս օրի–

նակները տեսանք եւ թէ՛ 4–3, գ.օ.

4–3. Խորհուրդ մեծ եւ սքանչելի
Որ յայսմ աւուր յայտնեցաւ
Հովիւքն երգեն ընդ հրեշտակս
Տան աւետիս աշխարհի

կամ 2–5. Խորհո՛ւրդ մեծ եւ սքանչելի
Որ յայսմ աւուր յայտնեցաւ
Հովի՛ւքն երգեն ընդ հրեշտակս
Տան ա՛ ւետիս աշխարհի։
Ծընա՛ւ նոր արքա՛յ
Ի Բե՛թ լեհեմ քաղաքի
Որդի՛ք մարդկան օրհնեցէք
Զի վա՛ սըն մեր մարմնացաւ։

Շարականի խազերուն հետեւելով այս վերջին անդամատութիւնն աւելի պատշաճաւոր է։

Առնենք դարձեալ ուրիշ օրինակ մը, նորէն Հ. Սահակեանին ընտրածներէն. աւագ ուրբաթու բձ. օրհնութեան «Արծաթսիրութեամբ» զոր Հ. Բագրատունին 4–4–4–4 ին մէջ կը դասէ զոր եւ Հ. Ս. սկզբմամբ ընդունելով հանդերձ խոտորումներ ի վեր կը հանէ որք մեկնելի չեն նոյն դրութեամբ որոյ ի դարման հետեւեալ անդամաբաշխութիւնը կ՚առաջարկէ

1. Արծաթսիրութեամբըն | մոլեալ Յուդա | գիւր | ըզ
մեծ վարդապետն
2. Ընդ երեսուն | արծաթոյ | Հըրէիցըն | մատնէր
3. Ընդ որում ես | համբուրեցից, | ասէ, | ըզ նա կալարուք
4. Ո՛վ համբոյր | նենգութեան | նըշան | եւ առիթ մահու։
5. Մերկացաւ | յինքենէ | զաստուածային | սուրբ հոգին
6. (Եւ)* Ըզգեցաւ | ըզ սատանայ | որպէս (զ*)հանդերձ
| արկաւ զիւրեաւ։

Բայց այս անդամատութիւնը արդարացնող պատճառ մը չեմ տեսներ, բացի տողերը քառանդամ բերելու մտադրութենէն։ Իրականութեան մէջ սակայն այսպէս չէ. երաժշտական հանգամանքը կը պահանջէ մի ա՛յլ տրոհում, օրինակ.

1. Արծաթսիրութեամբըն մոլեալ Յուդա

*Իմ գործածած Շար.ին մէջ այս տարերքը կան, մինչդեռ յառաջբերութեան մէջ դուրս ձգուած են, թերեւս զանցառութեամբ։

2· Զիւր ըզ մեծ ըզ վարդապետն
3· Ընդ երեսուն արծաթոյ
4· Հըրէի՛ցըն մատնէր:
1· Ընդ որում եւ համբուրեցից
2· Ասէ ըզ նա կալարուք,
3· Ո՛վ համբոյր նենգութեան նըշա՛ն
4· Եւ ուխթ մահու:
1· Մերկացա՛ւ յինքենէ
2· զԱստուածայի՛ն սուրբ հոգին
3· Եւ ըզգեցա՛ւ ըզ սատանայ
4· Որպէս զհանդերձ արկաւ զիւրեա՛ւ:

Առնենք մի այլ օրինակ աւագ օրհնութիւններէն Ստեփաննոս Սիւնեցւոյն «Երգեսցուք»ը զոր այսպէս կը տրոհէ Հ. Ս.ը.

1· Երգեսցուք երգ նոր
2· Աստուծոյ փըրկչին մերոյ
3· Որ փըրկեացն ի թըշնամւոյն
4· Ծառայութենէ ըզ մեզ
5· Հըզօրն իւր կարողութեամբն
6· Եւ սպրեցոյց փառաւորեալըն՝ փառօք:

Մենք սակայն պիտի կարդաւորէինք

1· Երգեսցուք երգ նոր — Աստուծոյ փրկչին մերոյ
2· Որ փրրկեացն ի թըշնամւոյն — ծառայութենէ ըզ մեզ
3· Հըզօրն իւր կարողութեամբ
4· Եւ ա՛պրե՛ցոյց
5· Փառաւորեա՛լըն փառօ՛ք:

եւայլն:

Եւ այս անդամատութիւնը հրամայողը երաժշտական հարկն է. ան է որ թոյլ չտար կամայապէս զատել «երգ նոր»ը «երգեսցուք»էն զի այս վերջինը երաժշտապէս բութ եւ անկարիր է եւ շարժելու համար յենարանի մը կը կարօտի որ ձայնը իւր ծաւալը գտնէ եւ այս յենարանը յաջորդող «ե՛րգ նո՛ր»ն է:

Նոյնպէս եւ նոյն պատճառաւ չենք կրնար հետեւորդ տողին մէջ «Աստուծոյ» եւ «Փրկչին մերոյ» տարերքն անջատել եւ ուրոյն անդամներ կազմել, քանզի «Աստուծոյ» եւ «Փրկչին» երաժշտաբար լուռ են եւ շեշտը «մերոյն» ստացականին վրայ է, եւ այս շեշտը ա՛յնչափ հզօր է որ նոյն իսկ յաջորդ յարաբերա—

կան նախադասութիւնը կը կառավարէ։

Նոյնպէս չենք կրնար «որ փրկեաց»ին գտնել «ի Թշնամւոյն»ը, զի այս վերջնոյն վերջին վանկին վրայ է որ երաժշտական շեշտը իր բովանդակ ծանրութեամբ ինկած է եւ նախորդ հաշմ եւ կարկամ խումբը բարձած ընդ քարշ կը տանի, իր սաստին տակ ունենալով նաեւ բոլոր յաջորդ բութ անգամները որք քառանիշի համար միայն գտուած են :

Իսկ վերջին հանգրուանին մէջ «եւ ապրեցոյց» անգամը խառնել յաջորդին հետ եւ 3 անգամ կամ ամանակ կազմելը պարզապէս կամայական եռանգամ յանկերգ մը յօրինելու համար կ'երեւի. եթէ ոչ, բառը կրկնակի ամբակուռ շեշտերով այնքան հզօրապէս պաշտպանուած է որ պէտք չզգար, քալելու համար, ուրիշ նեցուկի. ինք իր մէջն ունի իր շարժիչ մեքենայն (մօթօր)։ Պէտք է ինքնակաց զատ անգամ մը լինի, ինչպէս երաժշտական հարկը եւ քերականական կապակցութիւնը կը պահանջեն որպէս զի մի սերտ միութիւն կազմեն հետագայ «փառաւորեալըն փառօք»ի հետ։

Նոյնպէս իմացիր եւ միւս տուներուն համար այ։ Առնենք մի ուրիշ եւ վերջին օրինակ, հռչակաւոր «անձինք»ը զոր նախապէս այլ յիշատակած էինք։ Իրաւամբ կը հերքէ Հ. Սահակեանը այս գոհար երգին հայկական բառած տաղաչափութեան պատկանիլը, քանզի ոչինչ կայ անոր մէջ այս ենթադրութեան մազիւ չափ ույժ տուող, այլ կուգայ այն եզրակացութեան թէ ամանակեայ արուեստի է անոր կազմը եւ ի վեր կը հանէ յօրինուածութիւն մը որ կը պատասխանէ առաջին երեք տողերու համար 3 ամանակի, վերջին 2ի համար 2ի, եւ կը չափէ այսպէս.

Ա.

1. Անձինք նուիրեալք սիրո՛յն Քրիստոսի
2. Երկնաւոր նահատակք եւ կուսանք իմաստունք
3. Ի պարծանս ձեր բարձրացեալ՝ տօնէ
4. Մայր Սիոն զդստերօքն իւրովք։

Բ.

1. Բարբառք երկնաւորք լցին զերկիր
2. Քանզի հաս անուշից բուրեցայք ի Քրիստոս
3. Ողջակէզք բանաւորք եւ զոհք փրկութեան եւ
   որոջք անարատք

4· Ընծայեալք Աստուծոյ:

Գ.

1· Գեղեցկութիւնք մարմնաւոր պայծառութեան ձերոյ
2· Յիմարեցոյց ըզ թագաւորն եւ պակեան Հեթանոսք
3· Ի գեղ ըսքանչելի աստուածատուր կուսանաց տար-
փացեալ զուարթունք
4· Ընդ մարդկան տօնեցին:

Դ.

1· Երկունք մահաբերք անխծիցըն՝ լուծան
2· Եւ Ադամ վերըստին աստուածակերպ ճոխանայ
3· Փոխանակ Եւայի դըստերք նորա մարտիրոսք եւ
կուսանք
4· Ընծայեալք Աստուծոյ.

եւայլն, եւայլն:

եւ կը յաւելու.

«կարելի՞ է արդեօք այսքան զուգադիպութիւն, վերջին տողերու երկու ամանակով ըլլալն յամենայն դէպս շատ որոշ է, եւ այս կռուանը ունենալէ վերջ՝ նախորդ տողերու երեք ամանակով ըլլալն ինքնին ի յայտ կուգայ»:

Կը ցաւիմ որ բնաւ եւ ոչ իսկ համամիտ կրնամ ըլլալ արգոյ հեղինակին այս վստահ վճռականութեանը: Ընդհակառակն՝ շէնքը ամբողջովին խախուտ կ՚երեւի ինձ եւ մտացածին տիպի մը վրայ յերիւրուած:

Նախ այնչափ ալ որոշ չէ թէ վերջին տողերը երկու եւ միայն երկու անգամով լինի. ի՞նչ կ՚արգելու որ երեք չթուենք, եւ յետոյ տրամաբանական ի՛նչ կապակցութիւն կայ որ վերջին տողերը երկանգամ լինելէ վերջ՝ նախորդները հարկաւորաբար եռանգամ պարտին լինել:

Դարձեալ. տաղաչափական ո՞ր հարկը կ՚առիպէ զմեզ որ տողերը երեք երեք անգամի բաժնենք, ո՛չ աւելի ոչ պակաս: Ինչո՞վ արգելուած ենք բաժնել, զ. օ.

Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի
Երկնաւոր նահատակք եւ կուսանք իմաստունք:

Կամ մի կուռ եւ լեցուն միակ անգամով

Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի
Երկնաւոր նահատակք եւ կուսանք իմաստունք են:

Քանի որ որոշ օրէնքի եւ պայմանի մը վրայ հիմնուած չէ, ամէն կարելիութեան բաց է դուռը:

Իրականութիւնը սակայն այս է որ ամանակի այս կամայական խաղերուն հետ բնաւ գործ չունի այս քերթուածը, այլ որոշ տիպի մը վրայ չափեալ ձեւեալ եռավանկ, քառանդամ, քառատողեան կանոնաւոր տաղաչափութիւն մ'է, ինչպէս վերն ալ յիշեցինք:

Ընդունուած չափն է 12, բաժանեալ 2 հատածի եւ սա՝ երկերկու եռավանկ անդամներու

$$2 \times [\ (3+3) + (3+3)\ ] = 12$$

Հիմը կը կազմէ ուրեմն 3ը որ երկու երկիցս կրկնեալ՝ կը յանգի 12ի, եւ այս ամէնը ա՛յնչափ կանոնաւոր եւ անսայթաք որ հնար չէ ուրիշ ո՛ր եւ է կերպարանք տալ առանց ներդաշնակութիւնը եղծանելու: Միայն մէ՛կ պարագայ մը կայ յորում երբեմն, այլ ցանցառապէս, թեթեւ շեղում մը կը նշմարուի երբ հեղինակը կը տեսնէ որ եռաթիւ վանկաչափով իմաստը պիտի նեղուի, չվարանիր յայնժամ մէկ կամ երկու վանկ աւելի թուել անդամատական ազատութեամբ, ազատութիւն որ, ինչպէս տեսանք, ամենուրեք քիչ շատ կը գտնուի. եւ որ թերութիւն չըլլալէ զատ առաւելութիւն մ'ալ է՝ անայլայլակ միօրինակութիւնը կոտրելով: Աւելի զգալի ընելու համար շարենք վերի տուները սոյն այս դրութեամբ.

Ա.

1. Անձի՛նք | նուիրեա՛լ | լըք սիրո՛յն | Քրիստոսի
2. Երկնաւո՛ր | նահատակք | եւ կուսանք | իմաստունք
3. Ի պարծա՛ | նո՛ր ս ձեր | բարձրացեա՛լ | տօ՛ նէ
4. Մայր Սիոն դըստերօ՛ | քըն իւրովք:

Բ.

1. Բարբա՛ռք երկնաւո՛ | րըք լըցի՛ն | զե՛րկիր
2. Քանզի հոտ անուշից | բուրեցայք | ի Քրիստոս
3. Ողջակէ՛զք | բանաւորք | ե՛ւ զո՛հք | փըրկութեան
4. Եւ որոջք անարատք | ընծայեա՛լք | Աստուծոյ:

Ե.

1. Երկուորք մահաբերք | անխծի՛ | ցըն լուծան
2. Եւ Ադամ | վերըստին | աստուածակերպ | ճոխանայ

3· Փոխանակ | Եւայի | գլխու՛ ըլք նորա
4· Մարտիրոսք | եւ կուսանք | ընծայեալք | Աստուծոյ:

Է·

1· Է՛ | զարմացումն | եւ ի վե՛ր | քան ըզ հրաշս
2· Խորհրդոց | եւ բանից | հրեշտակաց | եւ մարդկան
3· Քանզի էնն | Աստըւած | ամենազօր | զօրութեամբն
4· Խոնարհեա՛լ | տեսանէ՛ր | ըզ հանդէ՛ս | կուսանացն:
եւայլն:

*Այս երկու գրութեան մէջի տարբերութիւնը հասկնալու համար լաւ եւ ուշադիր համեմատութիւն պէտք է: Ցայնժամ պիտի տեսնուի թէ շատ բան, չըսենք բոլորը, կամայականութեան ձըգ-ուած է* ամանակեալ *ըստւածին մէջ եւ կցումներու՝ բաժանում-ներու, նոյն իսկ քերթողական գրչութեան մէջ արուեստական հնարքներ մտած են՝ յառաջագոյն պատրաստեալ կաղապարի յարմարցնելու համար: Այսպէս, գ· օ·*

*Ե· տան 1· տողին մէջ «անիծիցըն»ը բնագրին հարկ մը չկար իր յաւելցնել «երկունք»էն եւ ածական «մահաբերք»էն զատելու· կրնար անոնց հետ միանալով շատ լաւ անգամ մը կազ-մել, բայց յայնժամ անգամոյ թիւը պիտի պակսէր եւ վերած-ուէր երկուքի եւ այս կանխահոգութիւնն է որ ստիպում գրած է անջատ առանձին անգամ նկատելու զայն:*

*Ասոր պէս, շատ տեղեր կը տեսնենք որ բնագրին յայտնի գրած «ր»երը բոլորովին գեղչեալ են, խանգարելով քերթողին թէ՛ դիտումը եւ թէ՛ արուեստը: Օր·*

*Ա· տան 1· տողին մէջ, փոխանակ «նուիրեալըք»ի՝ «նուիր-եալք» կը կարդանք, մինչդեռ քերթողը այն «ր»ը յատուկ դրած է ուսումնական չափը ողջ պահելու համար:*

*Նոյն անպատեհութիւնը տեղի ունեցած կը տեսնենք նաեւ Բ· տան 1· տողին մէջ ուր «երկնաւորըք»ը «երկնաւորք» դար-ձած է:*

*Նոյնն է Գ· տան 1· տողին 1· բառը «գեղեցկութիւնըք» եւ Ե· տան «երկունըք»ը որ «երկունք» եղած է:*

*Եւ նոյն տան 3· տողին «դըստերըք»ը՝ «դըստերք»: Նոյն-պէս եւ այլ տեղեր: Մինչդեռ մեր իմացած արուեստով եւ գր-ութեամբ այս շեղումներու եւ այս բռնաբարումներու բնաւ տեղի չկայ, ամենայն ինչ իր անսայթաք կանոնաւորութեան*

մէջ է, օրէնքի՝ արուեստի եւ ճաշակի միայն հպատակելով:

Կը փակեմ հոս այս վերլուծութիւնը զոր պարտաւորաբար ըրի Նիւթին կարեւորութեանը պատճառաւ, յարգանքս եւ համարումս նոյն մնալով հանդէպ բազմարդիւն հեղինակին որ կը յուսամ թէ աւելի գործակից պիտի տեսնէ ի մեզ քան հակառակորդ եւ ինք առաջինը պիտի լինի ընդունող մեր հայեացքները եթէ ճշմարիտ են, ինչպէս մեզ կը թուի, կամ հերքել զանոնք, եթէ չեն, եւ յայնժամ մենք իր կողմը կ'անցնինք անվերապահօրէն:*

Բ.

Հիմա տեսնենք տաղերուն՝ Գանձերուն արուեստը: Ասոնց բանաստեղծական արժէքին վրայ արդէն խօսած ենք, հոս մի միայն չափաբերական տեսակէտով պիտի քննենք: Ասոնց արուեստը վերիններէն բաւական կը տարբերի եւ գուսանականին կը մօտենայ եւ չափերուն մէջ ալ աւելի զանազանութիւն կայ, հանդերձ ժուական ազատութեամբ ըստ օրինակի շարականներու:

Արդ՝ ուշադիր աչքէ անցընելով ընդունուած տաղարանները հետեւեալ չափերը գտանք սովորաբար գործածուած.

Եռանդամ 5

Էջ Աստուած վառաց
Եղեր հաց կենաց
Եւ ջուր ծարաւեաց:

---

Այս խորհուրդ լցաւ
Անդ գուշակեցաւ
Աստ կատարեցաւ:
Սիրտ իմ սասանի

---

*Ափսո՛ս, հազար ափսո՛ս, լռեց այժմ այս գեղանուագ խօսնակը, իր հետ տանելով բազում ամաց ամբարեալ հմտութիւն, ընկճելով անողոք հարուածին տակ զարշելի Թուրքին, Տրապիզոնի նահատակութիւն: Չէր կարծեր որ գործս դեռ լոյս չտեսած իր եղերական մահը պիտի ողբայինք: Յարգանք իր յիշատակին:

Սարսափ    զիս    ունի
Վասըն    Յուդայի

Երկանդամ 5–5

ՅԱստուծոյ չինեալ    քաղաք պատուական
Ցանկալի զուարթնոց    եւ որդւոց մարդկան
Ըզքեզ նորոգեաց    Դաւիթ մեծ արքայն
Սուրբ Երուսաղէմ    քաղաքդ աննըման:

4–5

Ի ժահահոտ    վիրապէն ելեալ
Զարքայն վարազ    բանիւ բըժըշկեալ
Հովուապետին    գքաջ հովիւն ընտրեալ
Լուսաւորիչ    Հայոց առաքեալ:

4–4

Այսօր ձայն    նըն հայրական
յերկնից իջեալ    հաճոյական
Սիրեցելոյ    Որդւոյ վըկայ
Ա՛յ յորդորէ    գետ յորդորէ    գէտ յորդանան
Աւետաւոր    ձայնիւ երգէր
Մեծ կարապե    տըն Յովհաննէս:

4–3

Քրիստոս փառաց    Թագաւոր
Այսօր եկեալ    յընծայումն
Կատարելով    նա զօրէնս
Քառասնօրեայ    գալըստեամբն:

5–6

Մովք յարեւելից    ընծայաբերք եղեն
Զոսկին եւ զկընդրուկն    եւ զպատուական զըմուռն
Այն Թագաւորին    այն նորածին փըրկչին
Զքեզ պըսակողին    փառք յաւիտեանս, ամէն:

6–5

Անձն իմ    յամե    նայն    ժամ
Ի Տէր    պարծես    ցի
Լըեալ    զառքըն    հե    զոց
Ցայժ ու    րախաս    ցին
Մեծ ա    բարէք    ընդ իս

Ըզ սէր ամե նի
Եւ սուրբ անուն նորա
Միշտ բարձր եղի ցի

3–3–3

Վըկայից հանդիսից հրաշալի
Նեղութեանց հաղորդեալք Քրիստոսի
Քաջաղէն ի մըրցմու նըս մարտի
Եւ բարձեալ յուս ըզ խաչն Յիսուսի։

5–5–8–5

Անարատ տաճար
Բարձրելոյն անճառ
Գանձ անապական Մարիամ
Դրախտ ծաղկօք լըցեալ։

3–4–4

Նորն Ադամ | հնոյն Ադամայ | որդիացաւ
Ի կուսէն | աստուած եւ մարդ | նոր խառնեցաւ
Երրակի | անճառապէս | յոյժ միացաւ
Եւ բնութիւնն | երկաքանչիւր ոչ շփոթեցաւ։

7–8

Աւետիս մեծ խորհըրդով
Խորհուրդ ծածկեալ մեզ յայտնեցաւ
Աւետիս լոյս Հօր ծագեալ
Ի ծոցածին էութենէ
Աւետիս յայտնեալ Աստուած
Ի հողեղէն գոյացութիւնս
Աւետիս առաքեցաւ
Հրեշտակապետն Գաբրիէլ։

7–7

Ի լըծակցութիւն գործոյ
Թումայի առաքելոյ
Ի Հայք կատարել զընթացս
Փոխան Թադէի լինել։

5–7

Արթունք զըւարթունք
Բանին բանաւոր ծիծունք
Գարնան աւետիս

Դրախտին գոյն ըզգոյն ծաղկունք
Եւ քաղցրաճաշակ
Զարմին զանազան մըրգունք:

7–5

Վեհից Թագաւորն այսօր
փառօք մըտանէ
Արեամբ կարմրագոյն ներկեալ
Զմարմինըն մաքուր:

4–4–4

Յանեղական | բանն ի Հօրէ | մեզ յայտնեցաւ
Կամաւ Հօ՛ր | եւ սուրբ Հոգւոյն | մարմին զգեցաւ
Ի Բեթլեհէմ | ի սուրբ Կուսէն | տըղայ ծընաւ
Բոլոր ծընունդս | Ադամային | ուրախացաւ:

2–5

Այսօր | նորահրաշ տօնիւս
Խընդամք | ձայնս առնեմք մանկունք
Մխմեանց | ծափս հարկանելով:

5–2

Աստ Եբրայեցւոց | մանկունք
Զերգ ըզ քրովբէից | առեալ
Հեթանոսական | դասուց
Տօնակից վեհիցն | եղեալ:

4–4–3

Ի գերեզման | յարուցելոյն անմահին
Այսօր գոչէր | հրեշտա՛կն | երկնային
Յարեաւ Քրիստոս
Զարթեաւ Քրիստոս
Ի լո՛յս
Գերեզմանէն:
Պահապանքըն | զարհուրեցան | ի յահէն
Քանզի ի կոյս | ի նորափոր | տապանէն
Յարեաւ Քրիստոս

. . . . . . . . .

Առ սուրբ վիմին | նըստեալ գոչէր | հրաշալին
Իւղաբերքըն | քարոզելով ծաղկէին

*Յարեաւ Քրիստոս*

. . . . . . . . . . . . . .

5–2
—
5–3

*Բարբառ աւետեաց | ձայնիւ*
*Գաբրիէլ գոչէր | սըրբուհւոյն*
*Առ քեզ առաքեմ | մաքուր*
*Պատրաստեալ տեղի | տէրունւոյն:*

5–2
—
4–4

*Այսօր նոր արեւ | հարեալ*
*Ի նորահրաշ | արեգակնէն*
*Այսօր նոր շուշան | ծաղկեալ*
*Ի նորատունկ | բուրաստանէն:*

*Բովանդակելով ուրեմն թուեալ չափերը կը տեսնենք որ յաճախութեան կարգաւ գործածուածներն հետեւեալներն են.*

5 *յորմէ ունինք* 76 *չէնք*

4–4 . . . . . . . 57 »
4–5 . . . . . . . 54 »
4–3 . . . . . . . 29 »
5–6 . . . . . . . 21 »
5–2 . . . . . . . 18 »
7–5 . . . . . . . 6 »
4–4–4 . . . . . . . 3 »
5–5 . . . . . . . 3 »
6–5 . . . . . . . 2 »
3–3–3 . . . . . . . 2 »
5–5 / 8–5 . . . . . . 2 »
3–4–4 . . . . . . . 2 »
7–8 . . . . . . . 2 »
2–5 . . . . . . . 2 »
7–7 . . . . . . . 1 »

5–7 . . . . . . . 1 »
4–4–3 . . . . . . . 1 »

5–2
—— . . . . . 1 »
5–3

5–2
—— . . . . . 1 »
4–4

*Գուցէ գտնուին աչքէ վրիպածներ ալ կամ այլ տաղարաննե-րուն մէջ որ ընդունուած չեն կամ գործածութենէ դադրած: Աս կը ցուցնէ մեզ թէ ո՛ր չափերն էին հին ճաշակին ախորժ ընծա-յողները: Ասոնց մէջ կան որ հիմա ալ գործածական են, զ. օ.*

4–4
4–4–4
4–4–4–4
4–4–3
5–5
*երբեմն ալ* 6–5

*Այս վերջին չափով են բոլոր Ֆիրդուսիի ստուար դիւցազ-ներգութիւնը (Շահնամէ) որմէ մի քանի դրուագ ալ մենք հայա-ցուցած էինք, մաս մը նոյն* 6–5 *եւ մաս մ՚ալ* 4–4–3 *չափերով (տես մեր Շահնամակն):*

*
* *

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՆՈՐ ԱՐՈՒԵՍՏ ԵՒ ԹԵԼԱԴՐՈՒԹԻՒՆՔ

*Այս նոր արուեստը պիտի սկզբնաւորենք յանգի մուտէն ասդին, առանց ժամանակագրական կարգի հետեւելու: Բայց միայն յանգով չէ որ նոր դպրոցը կը զանազանի հինէն, այլ եւ չափերով, հատածներով, սեռերով, տեսակներով եւ այլ յօրինուածական շատ մը հանգամանքներով: Բացատրենք համառօտակի:*

*Եւ նախ պէտք է ազդարարենք որ մեր նպատակը արուեստին լոկ պատմափիլիսոփայականն ընել չէ, հազիւ անցողակի պիտի շօշափենք այդ մասը, այլ արուեստին անստգիւտ կատարելութեանը համար ինչոր գործնականին մէջ կարեւոր եւ անհրաժեշտ է՝ անոնք մանաւանդ ըստ կարի պարզել եւ աւանդել նպատակ դրած ենք:*

*Այս ուղղութեամբ, գիտենք, հինէն եւ նորէն մի քանի փորձեր երեւցած են գրական հրապարակին վրայ, ուրախ ենք սակայն յայտարարելու որ բարեբախտաբար ոչ մին ի ձեռին ունինք որով պիտի կրնանք, առանց կանխակալ կաշկանդումներու, աւելի ազատաբար եւ ինքնօրէն վարուիլ, իրականութեան վրայ միայն յենլով:*

### 1· ՉԱՓ

*Չափը, արդի իմաստով, տողի մը վանկերու թիւն է կամ թէ ըսենք գնացքին ոտնփոխը: Անով է որ ձայնական շարժումը քայլ առ քայլ կամ ոտն առ ոտն կը թաւալի յորմէ եւ առ մեզ պատշաճաւոր անունն՝* Ոտանաւոր:

*Հիներուն քովը, տեսանք որ, այս վանկաչափը չկայ եւ բոլոր շարականաց արուեստը անզուգաչափ եւ անհաւասարակշիռ է եւ ամանակաւ եւ երաժշտական տարբեր պայմաններով վճարեալ: Նոյնպէս եւ Յունաց եւ Հռովմայեցւոց մէջ ամանակն էր որ կուտար չափը, երկարելով սա, սղելով անդ՝ վանկերուն տեւողութիւնը: Նոր ազգերու մէջ, ինչպէս եւ առ մեզ, բնականէն երկարի սուղի զանազանութիւն չկայ. մեր ձայնաւորները*

առհասարակ հաւասարազօր եւ կամ այնպէս ըմբռնուած են եւ դիտեալ վախճանին համեմատ պատահաբար կ'երկարին կամ կը սղին, մինչդեռ հին լեզուաց, խմա՛ Սանսկրիտի, Պարսկերէնի, Յունարէնի, Լատիներէնի եւ Արաբերէնի մէջ երկարի ու սուղի որոշ եւ խիստ զանազանութիւն կայ: Անոնց մէջ, եւ ըսենք նաեւ բնականէն ալ, եթէ լաւ ուշադիր լինինք, ա, ու, ի ձայները միշտ երկար են, իսկ միւսները սուղ: Այնպէս որ երկարները կրնան երբեմն սղել՝ երբ բեռ չկայ վրանին, այլ սուղերը երբէք կարող չեն երկարիլ՝ ո՛րչափ ալ բռնադատես:

Ձայնական այս հանգամանքը ա՛յնչափ մեծ դեր կը խաղայ արեւելեան տաղաչափութեան մէջ որ երաժշտական կերպարանք կ'առնէ խօսքը, եւ վանկերը, շարժումը տուող ձայնաւորին քանակին համեմատ, կը տարածին կամ կը սերտնան եւ կերպ կերպ վէտվէտումներ կ'առնեն: Այս է դարձեալ՝ որ շարժ եւ դադարը, ելք եւ էջք, յամրը եւ շոյտը կ'որոշէ խօսքին մէջ զոր արաբը հարէֆեա՛ք եւ սիւֆուճա՛ք կը կոչէ: Շարժուն՝ ա, ի, ու ձայներով յօդեալները. դադարուն՝ միւս ձայնաւորներով (է, էօ, իւ) կամ երկբարբառներով ձեւացածները:

Այս հիման վրայ շինուած են բոլոր այն փաիլաթունճներու սիստէմը որ ծանօթ է արաբագիտաց որ եւ ոչ միայն չափեալ բանը այլ արձակն իսկ կը վարէ առոգանութեան մէջ:

Կ'արժէ որ ասոր վրայ հատորներ գրուի, ինչպէս որ գըրուած են, այլ մեզ համար չէ, քանզի մենք մեր ձայնաւորներուն մէջ այդպիսի զանազանութիւն չունինք: Կարծողներ եղան որ մենք ալ ունեցեր ենք ժամանակին եւ յետոյ խափանած.— թերեւս— բայց ներկային մէջ այդպիսի բան չենք տեսներ: Շեշտերն են որ կ'որոշեն մեր ձայներուն ելեւէջը՝ տեւողութիւնը՝ ոլորումները եւ մեր բառերը ի բնէ վերջաշեշտ են, թէպէտ եւ կրնայ շեշտը տեղափոխուիլ իմաստին եւ դիտման համեմատ: Ուստի եւ հայ բանաստեղծութիւն մը կարդացուած ատեն, նայելու է որ շեշտը հատածին միշտ վերջին կամ վերջընթեր վանկին վրայ դրուի, եթէ մասնաւոր ակնարկութիւն մը չկայ այլապէս վարուելու:

Շեշտոլոր կ'ըսուի բառը՝ եթէ վերջին վանկին վրայ է շեշտը. յարաշեշտոլոր՝ եթէ վերջընթերին վրայ է: Բայց այս զանազանութիւնք շատ կիրառութիւն չունին մեր մէջ. յունականի

*թարգմանութիւնք են աւելի:  Նոյնպէս կարծեմ թէ* «համ-բոյր» *ըսուածն ալ զոր առձեռն բառարանը «հաւասար երկայ-նութեամբ երկավանկ բառ» կը մեկնէ՝ յունականին աւելի կը պատշաճի քան մեր բառերուն:*

## 2. ՀԱՏԱԾ

*Չափերը թէեւ վանկերու գումարովը կը տարբերին, բայց գումարներուն բաշխումը մի եւ նոյն չըլլալուն՝ էական զանա-զանութիւն մը կը մտնէ մէջտեղ. այնպէս որ մի եւ նոյն գումարը տուող երկու տողեր, մի եւ նոյն չափին վերաբերելով հանդերձ, կրնան տարբեր քայլընթացք ունենալ եթէ հատածները տարբեր են:*

*Հատածը ձայնի այն սուղ հանգիստն* (բոզ) *է որ ընդհատ ընդհատ իյնալով կը դիւրէ արտասանութիւնը եւ քայլերուն կուտայ այն կոհակաւոր յետառաջութիւնը, այն պարաւոր ծըփ-ծըփանքը որ շարժումը կ'ոգեւորէ եւ կը համադաշնէ:*

*Օրինակ ըլլայ նախագոյն յիշուած տաղերգութիւններէն հետեւեալը.*

*Ի լըծակցութիւն գործոյ*
*Թումայի առաքելոյ*
*Ի Հայք կատարել զընթացս*
*Փոխան Թադէի լինել:*

*Կրնանք այս քառեակը նախ այսպէս 7–7 ընդունիլ. բայց այս ձեւը շատ գործածական չէ, նոյնիսկ հնոց մէջ: Հազիւ մէկ այս օրինակը աչքիս զարկաւ զոր անվերածելի տեսայ մանր բա-ժանմանց: Սովորականը կտրատումն է եւ կտրատումը կրնայ ըլլալ երբեմն 2–5, երբեմն 5–2, երբեմն 4–3 եւ մերթ ալ 3–4: Նոր չափերուն մէջ յաճախեալը 4–3ն է:*

*Այսպէս իմա՛ եւ միւս չափերուն համար ալ: Զարդիս ամե-նէն գործածականները կ'երեւին.*

4–4–3ը
5–5ը
5–5–5ը
4–4ը

*կամ միալար, ծայրէ ի ծայր պահելով նոյնութիւնը, կամ փոխ ընդ փոխ՝ այլազանելով չափերը տողէ տող կամ խումբէ խումբ:*

Բայց ասոնք, որչափ ալ յաճախեալ, չեն սահմանափակեր սակայն չափական դրութիւնը․ շատ ուրիշներ ալ կան ասոնցմէ դուրս որ աւելի կամ նուազ յաճախութեամբ կ՚երեւին քերթողաց գրչին տակ եւ հաճելի բազմազանութիւն մը կը բերեն տաղերու, մանաւանդ յորմէհետէ եւրոպական պէսպիսութիւնն ալ մուտ գտաւ եւ նոր եւ լայն ասպարէզ բացաւ չափերուն:

Նկատելի էական պայմանը այն է որ, ո՛ր կերպ կտրատում ալ ընդունուի տողի մը, պէտք է ա՛յնպէս պատշաճի որ թէ՛ իմաստը չարաչար յօշոտմամբ չչարչարուի, թէ՛ գնացքը չկասի եւ թէ արտաբերութիւնը չդժուարանայ: Հոս է արուեստագէտին ճարտարութիւնը:

Արեւելեայց մէջ ուր երկարի սուղի զանազանութիւնը կայ, անդամատութիւնը ինքնին դիւրացած է ամանակի տեւողութեամբ պարզապէս եւ եթէ երբեմն իմաստը առ կախ ալ կը մնայ՝ աննշմար կ՚անցնի եւ մինչեւ իսկ հաճելի ալ կը դառնայ, մինչ հայերէնի մէջ ուր սուր եւ բութ շեշտերն են միայն ընդհանուր գնացքը վարողները, իմաստը մեծապէս կը վտանգի եւ ներդաշնակութիւնը կը տուժէ վանկերու անբնական անջատումներէն: Շատ վարպետ գրիչներն անգամ տեղի տուած են երբեմն այս բռնի բաժանումներուն, բայց այնպիսի ճարտարութեամբ որ շատ զգալի եղած չէ:

Աւելի լաւ է սակայն, որչափ հնար է, զգուշանալ այսպիսի տրոհումներէ․ ո՛րչափ աւելի ամփոփ եւ անհատ պահուին իմաստները՝ ա՛յնչափ բնական եւ հաճոյալի կ՚ըլլայ արդիւնքը:

Աւելի զգալի ընելու համար այս կարեւոր կէտը, դնենք մի քանի օրինակներ, զգայնութիւններ չվրիպուցելու համար՝ մեր իսկ կերտածներէն․

Դառըն բաժա | կը գերութեան | դու ի Բաբի | լոն Իսրայէլ,
Քամեցիր ցը | մըրուր եօթա | նասում ամ․

Ինչպէս կը տեսնուի, ծայրէ ի ծայր խակ, տգեղ եւ անբընական են այս բաժնումները:

Փոխէ հիմա կարգը, ամէնեւին նոյն պահելով անդամները․
Դու գերութեան | դառըն բաժակն | ի Բաբիլոն | Իսրայէլ,
Եօթանասուն | ամ ցը մրուր | քամեցիր:

Բաղդատէ հիմա տե՛ս ի՛նչպէս իմաստները լի եւ ամփոփ, անցումները սահուն եւ ծորուն եւ գնացքն անխոչ եւ անսայթաք

*կը թաւալի երկրորդին մէջ, մինչ առաջինը յամենայնի կը կաղայ: Դարձեալ սա տողը·*

Ցիմար է ով | որ կ'ըսէ կեան | քը գիտեմ

*Դարձուր այլապէս եւ ըսէ՛*

Ցիմար ով որ | ըսաւ կեանքը | գիտեմ ես

*Իսկոյն կը չտկուի խեղութիւնը եւ գեղեցիկ պատկեր մը կ'ելլէ:*

## 3· ԱՌԿԱԽ ՏՈՂԱՆՑ

*Վերնոյն շարունակութիւնն է աս ալ, միայն թէ տողերուն ծայրը կը պատահի եւ փոխանակ վանկերու՝ բառերը կը բաժանէ իրարմէ բանաբար խախտելով բնական աղերսները: Այսպէսով յատկացուցիչը կը բաժնուի իր յատկացեալէն, ածականը՝ իր գոյականէն, բայը՝ իր խնդիրէն, եւայլն, եւայլն, մինչեւ որ նախընթաց տողին վերջին բառին առկախ իմաստը երկրորդ տողին առաջին բառով կամ բառերով լրանայ:*

*Հին արուեստի մէջ, առ Ցոյնս եւ առ Հռովմայեցիս, շատ կը հանդիպինք այս տողագանցութեանց եւ նորերուն մէջ ալ բոլորովին վտարեալ չէ եւ տեղ կայ որ պարտաւորիչ ալ կը դառնայ, այլ այնքան ալ յաճախեալ չէ հիմա, իսկ Արեւելեայց մէջ գուն ուրեք կը տեսնուի: Իրաւ է, արտասանողին հնարամտութիւնը շատ կը սատարէ անզգալի դարձնել այս կախակայումները, պատշաճապէս յարելով զինքն նախընթացին, բայց եւ այնպէս իմաստի լրման ակնկալութիւնը միշտ տանջանք է հոգւոյն: Կատարելութիւնը կը պահանջէ որ կարելի եղածին չափ ողջ եւ ամփոփ գան իմաստները, առանց յօդնեցուցիչ անցումներու՝ կախումներու, մանաւանդ երբ կախեալ յետադաս բառերը մեր անտանելի «մը»ն է, որ·*

. . . . . . . . . . . .

*մը* . . . . . . . . . .

## 4· ԹԻՒ ԵՒ ԿՇԻՌ

*Ասով տողի մը վանկերուն կամ ոտքերուն համարողական արժէքը չպիտի հասկնանք, այլ այն ալճեպրական նժարադրութիւնը որ աջ եւ ձախ երկու տարբեր այլ հանգիտազօր քանակու-*

թիւնները կը հաւասարակշռէ: Ասոր օրինակը կուտայ մեզ նախնեաց մէջ Նարեկացին որոյ աղօթքներուն մեծ մասը թուով եւ կշռով են.

Ընկալ քաղցրութեամբ,
Տէր Աստուած հզօր,
Զպաղատանացողիս զաղաչանս.
Մատի՛ր գթութեամբ
Առ պատկառեալըս դիմօք
Փարատեա՛, ամենապարգեւ
    զամօթական տրտմութիւնս.
Բա՛րձ յինէն, ո՛ղորմած,
    զանբերելի ծանրութիւնս
Անջրպետեա՛, հնա՛րաւոր,
    Ըզ մահացու կըրթութիւնս,
Ապրեա՛, մի՛շտ յաղթող,
    Ըզ խաբողին հաճութիւնս.
եւն., եւն:

Նորերէն ալ հետեւողներ կան այս կշռական ձեւին.

Տիպար նմոյշ մ'է «Մշակ»ի 1915—թ. 264ի մէջ, ողբացեալ Կարապետ եպ.ի մահուան առթիւ զետեղուած հետեւեալ կշռաւոր արձակ բանը.

«Հայոց աշխարհում,
անապատի պէս
մի լայն դաշտի մէջ,
ցաք—ցըրիւ ընկած
աղքատ թրփերից
փոքրիկ տունկերից
բարձր, շատ բարձր
հըսկայի նըման
կաղնին էր կանգնած,
հոյակապ, փարթամ.
Յանկարծ մոլեգին
յուզվում է Հիւսիս,
մռընչում, շաչում
կատաղի քամին.
մըռայլ մութ ամպեր

սարերի նըման
ծանր, յամրաքայլ
իրար են գալիս,
կուրծք կըրծքի տալիս*:
եւն.:

Մեր, արեւմտեայց մէջ ալ, ինձ ծանօթներէն՝ Շահան Նաթալին կը տեսնեմ որ կը մշակէ այս սեռը յաջողապէս:

Կան ուրիշներէն ալ այսպիսի հատուածներ զորս ձեռքի տակ չունիմ: Ինչպէս կը տեսնուի, արձակ ձեւի տակ տաղաչափութեան աւելի կը մօտենայ այս տեսակը եւ հին կշռաւորին կը պատասխանէ:

Կայ մի ուրիշ տեսակ կշռականութիւն ալ որ արձակի յատուկ է եւ ո՛ր եւ է ծանօթ չափի չգար, այլ դարձեալ տեսակ մը չափ եւ կշիռ է զոր վարպետ գրողը գիտէ՝ կ'զգայ եւ կը դնէ յարմար եւ պատշաճ տեղը: Ընթերցողը, եթէ հմուտ չէ՝ չնշմարեր, բայց ձայնին տեղ տեղ առած ալիքներէն եւ վայելած հանգիստներէն գոհ կը մնայ: Թիւն է այս արդիւնքը յառաջ բերողը, ոչ թուաբանական՝ այլ կշռական թիւը (փօնտէրէշըն): Ակադեմական դրուածքները, մեծավայելուչ ճառերը եւ ամէն ծանր եւ հանդիսաւոր նիւթերու մէջ մանաւանդ զգալի կերպով աչքի կը զարնէ խօսքին կշռաւորութիւնը: Պօսիւէթի հանդիսաւորութեան, Ֆենելոնի ճոխաճեմ գնացքին եւ առհասարակ բոլոր ծանր բեմբասացներու՝ ատենախօսներու յաջողութեան գաղտնիքներէն մին ալ այս է:

Ի՞նչ է ըստ ինքեան այս թուականութիւնը որ կը տարբերի բուն արուեստական չափականութենէ: Դժուար է բացատրել, քանզի որոշ օրէնքի մը տակ չէ, խօսողին կամ գրողին ճաշակէն եւ իմացողութեան չափէն կախում ունի: Ընդհանրապէս կրնայ ըսուիլ որ իմաստին պահանջմանը համեմատ նախադասութեանց տրուած մասնաւոր գնացքն է որ տեսակ մը կշռականութիւն կը դնէ խօսքերուն մէջ, արագ կամ դանդաղ, սուր կամ մեղմ, սուղ կամ երկար: Կ'զգաս որ այսինչ բազմավանկ բառը իր տեղը չէ եւ ծանրութիւն եւ յապաղում կը բերէ ընթացքին, մինչ իմաստը կայթ եւ կայտառ կը պահանջէ. կամ թէ ասոր հակառակը, կարճ

*Շատ տեղ «ը»երը մենք յայտնի գրինք կշռականութիւնն աւելի ըզգացնելու համար:

եւ կտրուկ բառ մը անդէպ է երբ իմաստը հանդիսաւորութիւն եւ ճոխութիւն կը պահանջէ եւ դու ինքդ կ'զգաս որ ընդհատումը յանկարծական է եւ դեռ խօսքը բան մը կ'սպասէ:

## 5. ՍԵՌ

Ասով կ'իմանամ նիւթին համեմատ չափերուն ընտրութիւնը, քանզի ամէն չափ ամէն նիւթի անխտրաբար չի գար. կան որ բարձր եւ խրոխտ կիրքեր արտայայտելու կը պատշաճին, կան որ մեղմ եւ ողորմ, կան ալ որ սաստ եւ եռանդ կը շնչեն: Կրից այս զանազան յուզմանց եւ շարժման համեմատ սեռերն ալ տարբեր դասակարգերու բաժնուած են, իւրաքանչիւրն իրեն համապատասխանող չափերով եւ պայմաններով: Ա՛յլ է դիւցազներգականը, ա՛յլ է ողբերգականը, ա՛յլ՝ աղերսականը, ա՛յլ՝ օրհներգականը, ա՛յլ՝ մարտականը, ա՛յլ՝ պարերգականը եւ ա՛յլ դեռ անթիւ փոքր շարժականները:

Ասոնց վրայ կատարեալ տեղեկութիւն կուտայ Պուալօ հռչակաւոր գաղղիացի բանաստեղծը զոր նոր ի հայ հանեցինք, ի վայելումն հայ բանասիրաց: Մեր մէջ շատ զանազանուած եւ սահմանադրուած չեն. միայն Հ. Ա. Բագրատունին է որ հին արուեստի նմանողութեամբ 2 (4+4) չափով իւր «Հայկ Դիւցազն» երկարաշունչ քերթուածը յօրինեց որուն ապա եւ այլք հետեւեցան, Հ. Ե. Հիւրմիւզ «Բուրաստան»ին, եւ Հայոց անմահանուն Հայրիկն իւր կրկին «Հրաւիրակ»ներուն մէջ, եւն.:

Մնացած սեռերուն մէջ կատարեալ ազատութիւն է. կամ իւր նախասիրականին կը հետեւի քերթողը կամ եւրոպական տիպի մը, երկուքն ալ թէեւ միապէս յարգելի:

## 6. ՅԱՆԳ

Յանգը, ինչպէս վերեւ ըսինք, արեւելեան պայման մ'է որ Արաբացւոց ծանօթութեամբ հետ մտաւ մեր մէջ ալ եւ որոյ գըլխաւոր ներկայացուցիչները եղած են Նարեկացին, Մագիստրոսը եւ մանաւանդ Շնորհալին: Թեր ու դէմ շատ բաներ ըսուեցաւ այս մասին. ոմանք պնդագոյնս հակառակեցան՝ աւելորդ կապանք սեպելով զայն եւ արգելք՝ մտքի ազատ թռիչքներու, մինչ այլք նոր եւ յանկուցիչ զարդ մը տեսան անոր մէջ եւ մտադիր յա-

րեցան անոր մշակմանը։ Այնպէս որ նոր լեզուներու բոլորին մէջ այսօր ծայրէ ի ծայր յանգն է տիրող իշխողը, գաղղիականին մէջ ի մասնաւորի՝ ա՛յնքան մարմնաւորած է տաղաչափութեան հետ որ դժուար է բանաստեղծութիւն մը երեւակայել այն լեզուով՝ առանց յանգի։

Հակառակորդաց առարկութիւնը վայրապար չէ, իրաւ է որ յանգը կաշկանդիչ կապանք մ'է որ հեղինակին մտքին ուղղութիւնը կը բռնադատէ շատ անգամ փոխել, ազատ սլացքը արգիլել եւ նմանաձայնութեան հարկ մը պարտադրելով՝ նոր նեղութիւններ եւ տագնապներ կ'աւելցնէ քերթողին։

Բայց ճշմարիտ է նաեւ միւս կողմէն որ եթէ յաղթողապէս հարթուին այս դժուարութիւնները եւ յաջողի քերթողը, առանց իմաստները զոհելու կամ կարգէն շեղելու, երկու կամ աւելի անգամ ունկը բաղխել միեւնոյն հնչմամբ, տեսակ մ'ախորժ եւ հեշտանք կը ծնի հոգւոյն մէջ եւ այս հաճոյքը ա՛յնքան աւելի խոր եւ զմայլական կը դառնայ ո՛րքան աւելի զգացուի արուեստագէտին ճարտարութիւնը այդ դժուարութեանց յաղթելու։

Այս եւ մի՛այն այս պայմանաւ յանգը շնորհ՝ փայլ եւ շէք կուտայ բանաստեղծութեան եւ ախորժալուր կ'ընծայէ զայն։ Իսկ եթէ յանճահս, յանդէպս եւ յանպէտս եկած փակած է տողին ծայրը եւ կրնայ նետուիլ առանց իմաստը խանգարելու կամ այլայլելու, այնպիսի յանգը արատ է ամբողջ քերթուածին եւ խակութեան վճիռը՝ քերթողին։ Միտքն է որ պէտք է վարէ յանգը եւ ոչ թէ յանգը հրամայէ մտքին.

«Յանգը գերի մ'է որ պէտք է հնազանդի» ըսած է Պուալօ մեծ վարպետը։

Գիտեմ որ շատ դժուար է այս պայմանին հաւատարիմ մընալը, մանաւանդ սկսնակներու համար որ միշտ հակամէտ են հիմը (ֆօնտ) ձեւին (ֆորմ) զոհելու, բայց ի՛նչ օգուտ որ ուրիշ ճամբայ չկայ կատարելութեան հասնելու, պէտք է զոհել սորվիլ՝ բնականութիւնը պահելու համար։

Մեծ քերթողներուն գործերը կարդացած ատենդ ա՛յնպիսի դիւրութեան եւ անճիգ եւ անբռնազբօս բնականութեան առջեւ կը գտնես ինքզինքդ որ անկարելի կը թուի քեզ որ տարբեր կերպով ըսուէր ինչ որ ըսուած է՝ եւ կը փորձուիս անգամ կարծելու թէ դու ինքդ ալ կարող ես նոյնը եւ նոյն կերպով ըսելու։ Բայց փոր-

*ձէ՛ ու տե՛ս: Հոս է ահա արուեստագէտին գերազանցութիւնը: Թող երբէք կատարելութեան չթեկնածէ այն որ չգիտեր բնական գրել:*

•

*Յանգի այս ընդհանուր ծանօթութիւնէն ետքը, անցնինք հիմա այն պայմաններուն որովք անբասիր կը յօրինուի նա:*

1. *Յանկալի է որ յանգը, որչափ հնար է, ճոխ լինի, այսինքն ոչ թէ միայն վերջին գիրը՝ այլ եւ ամբողջ վանկը եւ մէկէն ալ աւելի վանկեր համաձայնութիւն կազմեն: Մինակ մէկ գրի կապուած արուգ եւ նիհար յանգերը շատ գրաւիչ չեն. գեղասէր միտքը աւելին կը պահանջէ. ո՛րչափ լեցուն եւ ակաղձուն լինի յանգը, ա՛յնչափ աւելի կը լինի բերկրանքը: Վիկտոր Հիւկոյի գերազանցութիւններէն մին ալ իր յանգերուն ճոխութիւնը համարուած է: Բայց գիտնալու է որ ասոր ալ ծայրագոյն հետամտութիւնը լրջութիւնը կը բառնայ եւ արդիական ճղունքի կերպարանք կ՚առնէ: Յանգը ինքնին բնականէն գալ եւ գտնելու է իր տեղը, առանց ճիգի զոյգն նշմարանքի: Եթէ ճիգի* (բըշէրշ) *ո՛ր եւ է հետք տեսնուի յանգի վրայ՝ գիտցիր որ արդէն իսկ կորուսած է նա իր շնորհը, որչափ ճոխ ալ լինի:*

Պուալօ *այս մասին գեղցեիկ խրատներ կուտայ: Լեզուին հմտութիւնը եւ չափաբերական վարժութիւնը մեծապէս կը սատարեն յանգերու ընտրութեան. բայց ինչպէս ըսինք, յանգը պէտք է միշտ հպատակ գերին մէջ մնայ. տիրողը՝ խորհուրդը եւ իմաստը պէտք է լինի: Լաւագոյն է զոհել յանգը քան իմաստը, եթէ կը տեսնես որ անհաշտութիւն կայ:*

*Հիները շատ մտադիր չէին այս յանգական ճոխութեան. կրնամ իսկ ըսել թէ մեր օրերուն միայն զարգացաւ այս ճաշակը եւրոպական հետեւողութեամբ: Հին տաղաչափութիւնը առ հասարակ վերջին գրով գոհացած է. Շնորհալիէն Յիսուս Որդին ծայրէ ի ծայր այս աղքատիկ դրութեամբ կ՚ընթանայ:*

2. *Յանգերու համանմանութիւնը անպատճառ տառերու նոյնութիւն չպարտադրեր. խնդիրը ձայնի եւ ականջի վրայ դատելով՝ հանգիտութիւնը կատարեալ կը սեպուի եթէ նոյն ձայները բաղխեն ականջը, հոգ չէ թէ տարբերին տառերը:*

*Այսպէս, հայերէնի մէջ շատ քիչ կը լծակցին*

*բ, պ, փ,   գ, կ, ք,   դ, թ, տ,   դ, ս, ժ, չ*

*ծ, ձ, ց*　　*ճ, չ, ջ*　　*ռ, ր*　　*վ, ւ, փ*

*ո, ոհ, ոյ, ով, օ*　　*իւ, (իու)*　　*ոյ, (ույ) ու**

*Ուստի հաւասարապէս օրինաւոր են*

գանչ, լանջ, ճանանչ, ղօղանջ, խորդ, խորթ, հորթ, յորդ
որդ, որթ, ամառ, համար,

*եւս եւ* արհամարհ, աշխարհ, խոնարհ, *քանզի «հ»ին ձայնը կը քօղարկի արտասանութեան մէջ: Նոյնպէս օրինաւոր կը համարուին* տրխրօրէն—անօրէնն, ոլոր—անդորր, *եւ այլ այսպիսիք:*

3. *Հիներուն քով տեսակ մը հնարք ալ կ'երեւի, թէեւ շատ քիչ գործածուած ուր երկու բառեր կրնան յանգ կազմել եթէ նախընթացին պակսած վերջին տառը հետեւեալ տողը սկսող բառին առաջին գիրն է.*

*Օրինակ (Մերակերտ)*

Տէ'ս Արովեանն աւասի
Կ'երգէ իւր քաջ Աղասի:
Մեսրովպ ի Հայ աշխարհի
Կանգնեց կոթող չնաշխարհիկ:

*Ուր առաջնոյն պակսող «կ»ը երկրորդէն լրանալով թէ' բառերը կ'ողջանան եւ թէ' յանգերը կը նոյնանան: Սակայն ասոր կիրառութիւնը շատ զգուշալի է եւ հազիւ ի բացառիկ դէպս, առանց որոյ՝ գործը իւր լրջութիւնը կը կորսնցնէ:*

4. *Կան տեսակ մը յանգեր ալ որ ետքերս բաւական գործածուիլ սկսան եւ որ սակայն շեղումներ են աւելի քան ուղղակի զիրար չօշափող եզրեր, ինչպէս*

ուրծ (*մազապուրծ*)
*եւ* ուց (*մօր սիրուց*)

*ինչպէս ըսուած էր տեղ մը:*

*Նոյնպէս եւ* . . . մրմունջ
. . . անուրջ
. . . անանց
. . . դէմ դիմաց

*Իրաւ է գլխաւոր հնչական տառը չաչեցնելով՝ մէկ աստիճան նմանաձայնութիւն յառաջ կը բերուի, բայց միշտ պիտակ է եւ հեղինակին տաղնապը կը յայտնէ:*

---

**Ինչպէս* հիւս–բոյս, ձիւն–գոյն, ուր–յոյր–կիւր *եւայլն: Սակայն երկ–բարբառ ընդունուելու են այս տեսակ յանգերը եւ միշտ ալ հարկէ:*

5. *Ուրիշ գեղծում մ՚ալ նոյնահոլով յանգերու յաճախութիւնն է զոր այնչափ անտարբերաբար չափազանցած են նախնիք, այլ որ խստիւ խոտելի և խորշելի է այժմ, զի ի՞նչ աւելի դիւրագոյն է քան իրարու ետեւէ շարել* թղթի, գործի, գաւառի, քաղաքի, *եւայլն, կամ* կուգայի, կ'երթայի, կը նստէի, կ'ուտէի, *եւայլն, կամ* գործեցի, գրեցի, սիրեցի, *եւայլն, եւայլն, որք յանհունս կրնան երկարիլ, ուր ոչ վարպետութիւն կայ, ոչ հնարք եւ ոչ հաճոյք:*

*Այս ստգտանքէն բոլորովին ազատ է սակայն այն հոլովը որ իր հոլովակերտ վերջին գրին վրայ չիյնար յանգին ոյժը, այլ ամբողջ լեցուն վանկ կամ վանկեր են որ կը լծակցին: Այսպէս, գ.օ. շատ գեղեցիկ եւ օրինաւոր յանգ կը կազմեն*

խաւարի
յաւարի
տուարի
սաղաւարի

*քանզի գրեթէ ամբողջ բառն է յանգը տուողը: Ասով հանդերձ, քանի որ միեւնոյն հոլովի կրկնութիւն կայ, յանձնարարելի է չյաճախել: Եթէ սակայն նշանակութեամբ տարբերին ձայները, շատ աւելի հաճոյական կը դառնայ պէսպիսութիւնը եւ աւելի կը գնահատուի գիւտը, օր.*

խաւարի (*հոլովեալ*)
*կը* խաւարի (*բայ*)
Արի (*քաջ*)
Արի՛ (*եկ*)
Առի
Բարի
Բառի *եւայլն:*

6. *Ներելի չէ երբեք մի եւ նոյն բառը կրկնելով յանգ կազմել, բայց այն պարագային երբ տարբեր իմաստով առնուին, ինչպէս.*

շուք – *հովանի*
շուք – *փառք*
Ակն – *աչք*
Ակն – *պատուական քար*
Ակն – *աղբերակն*

զի այս դէպքերուն մէջ երկու կամ աւելի տարբեր բառեր կը նկատուին եւ ոչ նոյն։

7. Տեսակ մը յանգաւորութիւն ալ կայ որ տողին ծայրը չգտնուիր՝ այլ մի քանի քայլ առաջ, եւ իրմէ ետքը եկող բառը կամ խումբը ամէն տողի մէջ նոյնութեամբ կրկնուելով՝ անիրազեկներուն տեղի կուտայ կարծելու թէ յանգ բնաւ չկայ։

Ընդհակառակն՝ կայ, եւ իր տեսակին մէջ շատ գեղեցիկ տիպ մը կը ներկայացնէ այս յօրինուածքը։ Դնենք նմանողաբար օրինակ մը մեզմէ·

Դարուց երկար թմրութենէն
    զարթի՛ր, ո՛վ Մայր Հայաստան,
Հառաչանքներդ ու ողբ ու կոծ
    վա՛ր դիր, ո՛վ Մայր Հայաստան,
Ծառագունեց ահա 'րեւելք
    արշալոյսի ծագն է մօտ
Սրբէ՛ աչերդ այսուհետեւ
    կայթի՛ր, ո՛վ Մայր Հայաստան։

կամ

Թէ ի՛նչ անարգ ու ծանր է լուծն օտարին,
Մեծ ազգասէր դու Մովսէսին հարց, ուսիր·
Ինչո՞ւ լռեց հոգեպինդ լար քընարին,
Ե՛րթ Բաբելոն խեղճ տարագրին հա՛րց, ուսիր·
Թէ ի՛նչ է բուն Թուրքին հոգին ժանտ ու նենգ,
Անոր՝ անտէր՝ գառնուկ հայլին հա՛րց, ուսիր·
Ո՞ւր իրաւունք, արդարութիւն, կարգ, օրէնք,
Ոչ Սոկրատին, այլ դու Քրուբին հա՛րց, ուսիր։

## ՅԱՆԳԵՐՈՒՆ ՏՈՂԱԿԱՐԳՈՒԹԻՒՆԸ

Հիները, յանգերու թէեւ շատ սիրահար, բայց ճոխութեան՝ պէսպիսութեան եւ անզուգութեան մասին շատ անփոյթ եւ աղքատիկ մնացած են։ Մի եւ նոյն յանգն էր շատ անգամ որ ամբողջ տողերը կամ քերթուածը կը հիւսէր։ Արաբ եւ մանաւանդ պարսիկ արուեստին ծանօթանալով հայ ճաշակին մէջ ալ նորութիւն մտաւ եւ գուսանները սկսան իրենց միջավայրին ազդե-

ցութիւնը ցոլացնել։

Այսպէս երեւցան երկեակներ (մէսնէվի), քառեակներ (ռուպաի'), հնգեակներ (մուխամմէս), վեցեակներ (միւսէտտէս), ղազէլ, տիվան, սէմայի եւ այլ տիպեր, ընդունուած որոշ տեղադրութիւններով։

——————— +
——————— +

ուր երկու վերջին բառերը նոյն յանգով կը լծուին։

——————— +
——————— +
——————— +
——————— +

ուր քառեակին բոլոր տողերը կը միաբանին։

——————— +
——————— +
——————— —
——————— +

ուր երկու նախադրեալք եւ վերջինը կը յանգակցին եւ երրորդը կը հեռէ եւայլն։

Բայց հիմա որ եւրոպական յանգադրութիւնը մուտ գտաւ, այլեւս պարտադիր որոշ կարգ մը չերեւիր, գրեթէ գրողին քմայքին թողուած է տողերուն եւ տեղերուն ընտրութիւնը։

Սովորական դարձածներն են.

| | | | |
|---|---|---|---|
| ——— + | ——— + | ——— + | ——— — |
| ——— — | ——— — | ——— — | ——— — |
| ——— + | ——— — | ——— + | ——— + |
| ——— — | ——— + | | |

Դիտելի է որ յանգի ախորժը նման ձայներու մօտ մօտ լըսուելուն վրայ է, երբոր իրարմէ կարի հեռանան, առաջնոյն տըպաւորութիւնը արդէն կէս մը աղօտացած կամ բոլորովին անհետացած լինելով՝ ականջը չկրնար երկրորդը կամ հետեւեալները զուգորդել անոր, որով կը դադրի իր դերը եւ աչքին միայն կը մնայ նմանութեան զանազանութիւնը, որով կը չեղի արուեստը իր բուն նպատակէն, այն է խօսիլ հոգւոյն հետ՝ ականջի միջոցաւ։

Վասն որոյ, ո'րչափ գեղեցկութիւն եւ ճարտարութիւն այ

ցուցադրեն այս յօրինուածութիւնները, բուն ճակատէն արտուղի կը մնան միշտ: Արեւելեան բանաստեղծութեան մէջ շատ մեծ խստութեամբ պահպանուած է այս պայմանը եւ արդէն յանգի գոյութեան եւ լինելութեան բուն պատճառն ալ այս եղած է:

## 7. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԶԳՈՒՇՈՒԹԻՒՆՔ

Հիմա խօսինք այն ընդհանուր զգուշութեանց վրայ որք անհրաժեշտ են ոտանաւոր մը անստգիւտ եւ անբասիր ընելու: Ասոնք այնպիսի էական պայմաններ են որ եթէ չգտնուին, ի՛նչ որ ալ ըլլայ ուրիշ մասերով հեղինակին ի գործ դրած ճարտարութիւնը, գործը երբէք ստորինէն վեր չկրնար ելլել եւ ի զուր վատնած կ'ըլլայ հեղինակը իր հանճարը եւ տաղանդը: Դատապարտեալ է միշտ խակ եւ միշտ հետեւակ մնալ:

Գլխաւորները միայն թուելով՝ ասոնք են այն ակնարկեալ պայմանները. սահունութիւն, անուշութիւն, դաշնակութիւն եւ լեզու:

### ա. Սահունութիւն

Ասով կ'իմանանք այն յատկութիւնը որով բառերը իրարու ետեւէն կը լուծուին կուգան թաւալումի, առանց խնճբնճ հխդ—բխդ ներու եւ արտասանողը կ'ընթանայ առանց գայթել սայթաքելու եւ առանց շնչասպառ մնալու:

Հայերէնի սահուն ոտանաւոր գրելը շատ դժուար է եւ շատ քիչերուն տրուած է այս պայմանին գիտակցիլ եւ յաջողիլ, քանզի լեզուին մէջ թաւ ձայները յաճախաւոր են եւ բառերն ընդհանրապէս կանգնաչափ եւ ձայնաւորներու մէջ ալ անխուսափելի «ա»ը անվերջանալի բերանաբացութեամբ տիրական: Յաւե՛լ ասոնց վրայ յաւիտենական «կը»երու՝ «մը»երու ալ ամէն քայլափոխին ընդառաջութիւնը, յանժամ կունենաս ճըռգըռին պատկերը այն յոփրծ ճանապարհին զոր պարտիս կարել անցնիլ առանց գթել գլորելու:

Այս է որ մէջանց նետուած ոտանաւորներուն մեծ մասը անհանդուրժելի են, վասն զի ճիշդ այս կէտին մէջ կը թերանան: Եւ այս ըսելով միայն սկսնակներուն եւ համբակներուն չեմ ակնարկեր, որոնց աստիճան մը ներելի է խակութիւնը, այլ նոյն—

իսկ հաչակ համբաւ ստացած եւ իբր օրինակ չարունակ յառաջ բերուած հեղինակներուն ալ գործերը եթէ անկախ անաչառ քըննադատութենէ մ'անցնէին, պիտի տեսնուէր որ շատ քիչերը պիտի առողջ դուրս գային։

Ինչպէս հիւանդութիւնները՝ նոյնպէս եւ հիացումը վարակիչ է. ամենուն չէ տրուած անկախ յայլոց գաղափար կազմել, հեղինակութիւն վայելող անձի մը կարծիքն է որ բերնէ բերան կը յածի եւ հիացումը կ'ընդհանրանայ իբսէտիքսիթի ճամբով։ Յոռի սովորութիւն, որ փայփայելով թերութիւնները՝ ինքնահաւանութեամբ կը ջղագարէ հեղինակը եւ կատարելագործուելու յօժարութիւնը կը խափանէ։ Դառնալով նիւթին.

Սահունութեան աննպաստ պայմաններէն մին ցուցցինք վերը՝ լեզուին բազմայօդ խրթնութիւնը, բայց փութանք աւելցընել որ այս խրթնութիւնը մի միայն մեր լեզուին յատուկ չէ, ի բաց առնելով մի քանի գեղօժտեալները, մնացածներուն բոլորն ալ ունին առաւել կամ նուազ չափով իրենց խրթնութիւնը։ Եթէ անգլիերէնը արտասանուէր ճիշդ ինչպէս որ կը գրուի, կը կարծէ՞ք թէ ախորժ պիտի գար փափուկ ականջներուն։ Բայց տե՛ս թէ ժողովրդական հոգին ինչ հնարիմաց ելքով՝ կոկեր՝ հարթեր՝ դիւրեր է ձայները որ շնորհիւ ալ իր յաճախեալ միավանկութեան, այսօր ամենէն ընդունակներէն մին հանդիսացեր է բանաստեղծութեան եւ այս լեզուաւ գրած է Շէյքսփիր, նոր դարերու Հոմերոսը որ ամենէն հզօր ուղեղները կ'զբաղեցնէ իր հրաշակերտներով։

Ուրեմն գրողի ճարտարութենէն եւ ճաշակի զարգացման աստիճանէն կախում ունի, մեծ մասամբ, դիւրասահութիւնը։ Ի բազմաց երկուսը միայն յիշելով գաղղիականէն՝ ներքին անպատում բերկրանքով կը կարդամ միշտ Ռասինը եւ Պուալօն, եւ չգոհանալով մտացի որոճմամբ, կը փորձուիմ բարձրաձայն ալ եղանակելու, քանզի, ասթմաթիք լինելովս հանդերձ, գիտեմ որ շնչահեղձ խեղդումներու չպիտի հանդիպիմ։ Իրական հաճոյք մ'է արդարեւ այսպիսի ընթերցումները՝ ճաշակել եւ վայելել գիտցողին համար։

Մեր մէջ ալ, անցեալ սերունդներէն, Հ. Ա. Բագրատունին եւ Հ. Ե. Հիւրմիւզը նշանաւոր տիպարներ կը հանդիսանան սահունութեան։ «Հայկ դիւցազն»ի պէս 22,000 այսչափ տող պա-

րունակող ստուար հատորի մը մէջ հազիւ մի քանի անհարթութիւններ կը նշմարուին ուր հեղինակը տեղի տուած լինի իմաստի հարկին, մնացածը հոսուն եւ սահուն կ'ընթանայ անոստոստ։

«Որ ի քնար հոգեսաւեր ըզ Հայրն Հայոց երգես յերկինս,
Զառաջնորդըն հաւատոյ եւ զտիրազլուխ ազատութեան
Զամենակալ աթոռոյ եւ ըզ փառացըն վրէժխընդիր
Զախոյեանն առ ամպարիշտ բաբելական գոռոզութիւն
Որ զամենայն ընկեցեալ առ սէր երկնից եւ հայրենեաց,
Իբրաւամբք, սըրտիւ, զինուք յաղթեալ մարտին եւ դըժոխոց
Ըզ Նոյեան օրհնութիւնսն ի Թորգոմեան հաստատեալ զարմ
Եւ ջըրեալ զոխըն Քամայ՝ զ'ի յանիծից նահապետին,
Ըզ բընիկ տէրութիւնն եւ զուրբ պաշտօնն եհան յանդորր,
Հրեշտա՛կդ Հայաստանեայց՝ խըմբից Զուարթնոցըն դասապետ
Այսըր յիս աղէ մատո՛ զոսկի ջընար քո զերկնաւոր»...։

---

«Առաւօտ վարդակարմիր տեղ ի վերայ տեղայր լերանց
Ընդ չուխըս արեգական վաղայարոյց կարապետեալ։
Թօթափեալ այն ինչ ըզքուն հովիւք ըզխաշնըն կըթէին
Հընչէին զաւիթք ի բընչիւն մատաղ որթուց եւ զուարակաց
Գառանց եւ ուլուց ի հոտ կաթին փափաքելոց»։

---

«Ո՛վ գիշեր յոգնատըխուր յաւիտենից մըթոյն հանդէտ
«Զի՞նչ եւս այլ ի ծոցդ յըղի կըրես երկունըս Թորգոմայ
Երգեա՛ քընարդ երկնային, քաղցըր լարիդ կամք ի լըսել,
Ասա՝ զի՞ եղեւ արդեօք ամենագեղ կուսին Հայոց»։

«Հայկ դիւցազն»

---

«Ըզ բարգաւաճ դըրախտի զբօսանս
եւ ըզ վառսակ բազմադղըւարճ
Իւ անդ ուրեմն ի յեդէմ
ըսկըզբնամարդն ըզբօսանէր.
Մինչ չեւ մահուն անդր իներ
քըս սողոսկեալ օձակերպիկ,

Ըզ վաստակն յոր ըսփոփումն
        արդ մահացուի է՛ պարապել,
Առից ի նուագ։ Իսկուհիդ
        Փլորա ե՛կ այսր, առ իս մատիր,
Որ չեւ մայր ըզ ծնելասէր
        գութ ի ծաղկունս արկանէիր»···

Հ. Ե. Հիւրմիւզ (Բուրաստանք)

---

«Այն ինչ արեւն ընդ կարճին
        ճապուսս ի բաց արփաթեւեալ
Մեկնեա՛ զդեռաբուսիկ
        ընձիւղս առ մօրըն բողբոջեալս,
Կամ ծիլս ի յօստոց,
        ամուլ թէ մայրն իցէ, հատեալ
Ինոր աշնայնի
        ածս ի յածուս տընկագործեա։»···

«Բուրաստանք»

Դասական լեզուներու եւ իտալականին խորին հմտութիւնը անկարելի էր որ առանց ազդեցութեան մնար հայ մտքերու վրայ եւ չտար անոնց այն կիրթ ճաշակը եւ զգայուն ականջը որ անհրաժեշտ են գեղակերտելու ։

Խոստովանելի ալ է միւս կողմէն որ գրաբարը աշխարհաբարին վրայ անհուն առաւելութիւններ ունի հոլովներու որոշ զանազանութիւններով, բայերու հաստատուն ձեւերով, ոճերու բնական կերպարանքով, եւայլն, եւայլն, մանաւանդ բոլորովին զերծ եւ ազատ լինելով այն խել մը մանր մունր խեչերանքներէ, «կը»ի՝ «մը»ի պէս որ չարաչար խոչընդոտ են գրողի։

Այսու ամենայնիւ՝ վարպետ գրիչները ասոնց հետ ալ վարուելու կերպը գիտեն եւ յաջողած ալ են շատ հաճելի եւ սահուն տողեր արտադրել։

Ահա նոր Մխիթարեաններէն Հ. Ա. Ղազիկեանի աշխարհաբառ թարգմանած Միլտոնի «Դրախտ կորուսեալ»էն նմոյշ մը·

«Մարդուն նախկին ըմբոստութիւնն, ու պտուղն
Այն արգիլուած ծառին՝ որուն մահաբեր

Ճաշակը մահ մըտոյց աշխարհ, ու բոլոր
Մեր աղէտներն՝ Ադին Դրախտին կորուստով,
Մինչեւ որ մարդ մը մեծագոյն կանգնեց մեզ
Ու վաստըկոյց երանաւէտ գըրգարան,
Երգէ՛, Մուսա՛ երկնաւոր դուն Քորէբի
Եւ Սինայի գագաթներուն վրայ զանխուլ
Ծընչեցիր ա՛յն հովուին որ նախ առաջին
Ուսոյց ընտրեալ տոհմին թէ ի՛նչպէս եղան
Երկինք ու երկիր ի սկըզբանէ Թոհրոհէն.
Կամ Սիոն լեռն ու Սելովայ թէ վըտակն
Որ կը քերէր ուղխինաձեմ Աստուծոյ
Դաբիրային քովէն՝ քեզի աւելի՛
Հեշտ կը թըւին, անկէ՛ց ըղ քեզ կը կանչեմ
Ես օգնութեան իմ այս յանդուգըն երգիս»:*

Ուր բացայայտ աչքի կը զարնէ թարգմանչին գիտակից երկիւղածութիւնը կորձէական խըրթնումներէ զգուշանալու:

Դարձեալ ի՛նչ աւելի սահուն եւ գլորուն քան Պէշիքթաշլեանի այն տողերը՝ երբ կը գոչէ.

Ո՜հ, ի՞նչ անուշ եւ ինչպէս զով
Առաւօտուց փչես՝ հովիկ.
Ծաղկանց վըրայ գուրգուրալով
Եւ մազերուն կուսին փափլիկ:

Եւ անմոռանալի Ռուսինեանին այն կարօտաբաղձ աւաչը

«Երբոր բացուին դըռներն յուսոյ
Եւ մեր երկրէն փախի սայ ձըմեռ,
Չքնաղ երկիրս մեր Արմենիոյ,
Երբ փայլէ իւր քաղցրիկ օրեր,
Երբոր ծիծառն իւր բոյն դառնայ,
Երբոր ծառեր հագնին տերեւ
Ցանկամ տեսնել զիմ Կիլիկիա
Աշխարհ որ ինձ ետուր արեւ»:

---

Նոյնպէս եւ այն ծանօթ երգը
«Թէ իմ ալեւոր հերքըս սեւնային
Ուժըս ինձ ետ գար, կըտրիճ դառնայի,

Բոլորովին նորերէն դիտմամբ շատ օրինակներ չեմ բերեր, տհաճութեանց տեղի չտալու համար, կան ասոնց մէջ ալ շատ գեղեցիկ եւ սահուն տողեր, բայց ասոնք ընդհանրապէս ովասիս- ներ են անջրդի անապատներու մէջ, մնացածներն առ հասարակ խեցբեկ եւ անյարիր են:

Այս թերութիւններէն զերծ մնալու միակ հնարը՝ գրուած տողը բարձր ձայնիւ կարդալն է: Եթէ արտասանելու համար ո՛եւէ ճիգ ընել պարտաւորուեցար, յոռի է կազմդ, պէտք է ջըն- ջես: Մեղանչող բառը իսկոյն ինքզինք կը մատնէ, կամ վտարէ՛ իսպառ, մի ուրիշ դարձուած տալով խօսքին, կամ այնպիսի դը- րացնութեան մէջ դիր որ խստութիւնը ամոքի:

Որչափ ալ անկարելի է ամէն պատահականութիւն նախա- տեսել, քանզի իւրաքանչիւր անհատ դէպք իր յատուկ անհա- տական պահանջն ունի, այսու ամենայնիւ հետեւեալ մի քանի զգուշութիւնները ոչ սակաւ կը սատարեն վտանգէ խոյս տալու:

1. Եթէ կրնաս եւ նիւթդ կը ներէ, խիստ եւ խրթնաձայն բառ բնաւ մի գործածեր, ո՛րչափ ալ լեզուին մէջ գտնուած ըլ- լայ, քանզի անկարելի է ամէն տեղ եւ ամէն ատեն ախորժալուր բառեր գտնել ձեռքի տակ եւ այս՝ միայն մեր լեզուին համար չէ՝ այլ գրեթէ բոլոր լեզուներուն մէջ այսպէս է, մինչեւ իսկ ամենէն քնքոյշներուն: Քերթողի մը համար տեղ մը կարդացած եմ որ «ըմբոշխնեմ» բառը, խստութեանը պատճառաւ, բնաւ չուզեր եղեր գործածել: Քիչ մը չափազանցութեան տարած է զգայնութիւնը պատուական բանաստեղծը, այնչափ ալ խո- տելի բառ մը չէ այդ եւ կրնայ, վարպետ կերպով գործածուե- լով, շատ լաւ ալ անցնիլ, ինչպէս ըրած է նորերէն մէկը.

«Կ՚ուզեմ բոշխնել այս րոպէն»

Ե. Ե. Մէլքեան (Բազմ. 1913—258):

Ուր «ըմբոշխնեմ»ին «ըմ» առաջին վանկը ճարտարապէս հալեցուցեր է նախընթացին «եմ» վերջավանկին մէջ, օգտուե- լով եմի եւ ըմի նմանաձայնութենէն: Իրաւ է որ անտանելի են խախաց, մամաց, խախացոցեմ խղուըրտիւն, խնդրունդի պէս

---

*Միակ թերութիւնը որ կը նշմարուի այս աշխատութեան մէջ՝ իմաս- տից չափազանց առկախութիւնն է: Համոզուած եմ որ, այն հմտութեամբ որ կը ցուցնէ թարգմանիչը՝ կրնայ իր ապագայ երկոց մէջ կամ իսպառ խոյս տալ եւ կամ յոյժ չափաւորել այս յարգութիւնը:

*ձայները, որոնց տեղ նոր եւ աւելի ճաշակաւորներն ստեղծել աւելի խելք է, կամ պարսկերէնի կամ յունարէնի հիման վրայ:*

2. *Շարժման գալու համար անպատճառ «ր» օժանդակի պէտք ունեցող խռնեալ խիստ բաղաձայններէ զգուշացիր. եւ եթէ ստիպուիս՝ այնպէս մը կարգադրէ որ տեստ ձայնաւորնե-րու ընկերութեան մէջ գտնուի կամ առաջ կամ յետոյ որպէս զի մեղմանայ: Զգուշացիր նոյնպէս չչական եւ պայթուցիկ խը-ճողումներէ որ ականջի հետ կռիւ կ'ընեն,*

«խoufu շրջշրջելով, չնչին ջնարակ, ջրշեղջ ջրհոր *'ի պէս կոյտեր, գ. օ.:*

3. *Առանց բացարձակութեան տանելու, զգուշացի՛ր ձայ-նաւորներու բաղխումէն, մանաւանդ եթէ նոյն են ձայնաւոր-ները, ինչպէս.*

գործը ըլլայ
ըսի իրեն
փորձով ով որ, *եւ այլ այսպիսիք:*

*Ներելի է՝ եթէ ձայնաւորները տարբեր են*

գործը եթէ
փորձէ ըսի

*Այս բաղխումներու մէջ ամէնէն անտանելիներն են* աա *հան-դիպումները, մանաւանդ եթէ բազմավանկ ալ են, օր.*

ահա աղաղակելով
ահա ապաւանդակ
Արայ առաfինի

*Այսպիսի պարագաներուն՝ գեղչելու հարկ կը ծագի ձայ-նաւորներէն մին, եթէ այլապէս անօրինել կարելի չըլլայ: Բայց միտ դիր որ գեղչումը մի միայն կրկնեալ նոյն ձայնաւորներուն մէջ օրինաւոր է.* իսկ միւս տարբեր ձայնաւորներուն մէջ հա-գիւ կամ բնաւ: Պարզապէս գեղծում մ'է ուրեմն հիմա ա'յնչափ գործածական դարձած*

պիտ' առնեն,
պիտ' երթան
պիտ' բանենե՛ր

*քանի որ գեղչեալ տառերը նոյն չեն, բայց առ հարկէ կրնանք դարձեալ ներելի համարել այս գանցումը, ձայնի արագ թաւա-լումը քողարկելով աստիճան մը թերութիւնը: Իսկ բաղաձայնի*

*առջեւ զեղչումը որ այնչափ լայն կիրառութիւն առած է հիմա՝ բնաւ իւիք ներելի եւ արդարանալի չէ: Ի՞նչ աւելի դժոխալուր քան*

պիտ՝ փութամ
պիտ՝ ներէ
պիտ՝ գոչեն *այլանդակութիւնները:*

*Ըսէ՝ սակայն վայելչապէս.*

պիտ՝ իյնայ
պիտ՝ իմանան
պիտ՝ հիմնարկեն, *եւայլն,*

*ուր զեղչումը երկու նոյն ձայնաւորաց մէջ կատարուելով՝ օրինաւոր է, ոմանք մտարերեցին առաջին «ի»ն սղել, փոխանակ վերջինին եւ ըսին «տի» — տ՚երթամ, տ՚առնեմ, եւայլն: Հաւանական չէ որ գաւառական սահմանը անցնի այս փորձը: Իբր տեղական նմոյշ կրնայ երբեմն* ի գիր *գալ, բայց ոչ երբէք* ի կիր:

«Ը»

*Այս գիրը աշխարհաբառի մէջ թէ՝ որոշիչ յօդ է, գրաբառի «ն»ի համապատասխանող, եւ թէ հոլովակերտ է եւ կը շինէ անխտիր.*

*Ուղղ.* *Տունը փլաւ (էվ)*
*Տր.* *Տունը նայէ (էվէ)*
*Հայց.* *Տունը տեսանք (էվի)*
*Ներգ.* *Տունը կը կենայ (էվտէ)*

*Աստի ահա յաճախութիւնը խօսքին մէջ երբեմն իբր օժանդակ եւ ի բազումս ալ իբր արգելք եւ խոչընդոտ, վասն որոյ եւ գործածութիւնը յանհնարինս դժուարացած է: Ես այնպէս համոզուած եմ որ եթէ «ը»ի պատշաճաւոր կիրառութիւնը լաւ մը հասկցուի, հայ տաղաչափութիւնն ալ արատող տգեղացնող երեւոյթներէն մին պակսած կը լինի: Բայց ասոր կատարեալ խելամըտութեանը համար անպատճառ պէտք կը տեսնեմ արեւելեան ձայնաբանութեան* (ֆօնէթիք) *վրայ վերստին սուղ ակնարկ մը նետել, զի հոն է բանալին այս եւ ասոր պէս շատ մը անծանօթ մնացած երեւոյթներուն:*

*Վերը, «Զափ»ի առթիւ ըսինք որ հին լեզուաց ոմանց մէջ, յարեւելեան, թէ Արիական լինին եւ թէ Սեմական, ձայնաւոր-*

ներու էական զանազանութիւն մը կայ երկարի եւ սուղի, բայց այս երկար եւ սուղը այն քերականական կարգէ չեն որ յոյնը եւ լատինն ալ ունին եւ որ չեշտի աւելի կամ պակաս զարկէն կախում ունի, այլ ասկէ տարբեր մի բան, մի երաժշտական հանգամանք է որ ամանակի տեւողութեամբ կը չափուի եւ ոչ չեշտի թափով: Այսպէս, ի բնէ երկար են ա՛, ի՛, ո՛ւ, եւ ի բնէ սուղ եւ կարճ են է, ը, էօ, իւ: Առաջինները կրնան, ըստ պարագային, սղել, այլ երկրորդները ոչ երբէք կրնան երկարիլ:

Այնչափ էական է այդ խտրութիւնը որ երկրորդները ձայնի կարգ ալ անցած չեն եւ յատուկ նշանագիր ալ ստեղծուած չէ անոնց համար Ալփաբետին մէջ, աւանդականին ձգուելով անոնց ուղիղ արտաբերութիւնը, գոնէ Սեմականաց մէջ: Այս դժուարութեան դարմանելու համար է որ ետքերը հնարուեցան փէթհա, fէսրէ, զամմէ կոչուած hարէfէ (ձայնաշարժ)ները՝ արաբերէնի, եւ շէվա, փաթախ, շէղոլ նշանները՝ եբրայեցերէնի համար: Այնպէս որ մարդ մը որ կրնայ, առանց այս նշաններու օգնութեան, ուղիղ կարդալ, գ. օ. արաբական հատուած մը, դա ինքնին ապացոյց է թէ կատարելապէս հմուտ է քերականական արուեստի:

Ո՛րչափ երախտապարտ ըլլալու ենք մեր անմահ Մեսրոպին որ ձայնատարրներու պակասութեան այս տագնապներէն մեզ զերծ պահեց, մեր նշանագրաց մէջ մուծանելով ամէն կարելի ձայները բաւարար յորդութեամբ, որչափ որ կը պահանջէր լեզուին ոգին:

Ինչպէս վերը ըսինք, կարծողներ եղան, օտար հայագէտներէն, որ մեր մէջ ալ, խոր հնութեան շրջաններուն, ձայնաւորներու այս մեծ խտրութիւնը եղած է եւ ապա խափանուած: Որոշ փաստ մը չբերուեցաւ դեռ ասիկա հաստատող. սա՛ մեզ համար աներկեւան է որ գոնէ Թարգմանչաց օրով այդպիսի զանազանութիւն մը չկար հայ ձայներուն մէջ, եթէ ոչ՝ նշան մ'աւելի գնել, Մեսրոպին համար, դժուար գործ մը չէր: Մինչդեռ ընդհակառակն կը տեսնենք որ ուր ուրեք որ երկար ա՛ի հանդիպեր են Թարգմանիչք՝ կրկներ են հայ «այբ»ը, օր.

Նաասոն, Աքաար, Բաղաամ, Քանաան, եւայլն:

Տուրանականներէն թուրք լեզուն ալ չունի ձայներու այս երաժշտական զանազանութիւնը: Անոր այն ամանակեայ տեւո–

ղութիւնը տուողը արաբ եւ պարսիկ բառերն են, եթէ ոչ՝ բուն լեզուին բառերը մեռիններու նման ի բնէ բութ են։

Նոր եւրոպական լեզուներն ալ չունին այդ հանգամանքը, ասոնք ալ շեշտով միայն կը վարուին բացի թերեւս իտալականէ որ միջին օղակ մը կը ներկայացնէ հիներուն եւ նորերուն մէջ, շեշտի բազմոլոր ելեւէջներով։

Արդ՝ նախասացեալներէն կրնանք, իբր ընդհանուր հետեւութիւն, ընդունիլ որ երկրորդական ըսուած ձայնաւորները տըկար, անյարիր եւ գրեթէ զանցառելի են որոնց վրայ բեռ (շեշտ) դնել բնաւ կարելի չէ, մինչ առաջինները (ա, ի, ու), եթէ լեռ ալ բառնաս՝ կարող են տանիլ առանց կքելու։ Այս ծանօթութիւնը, որոյ բուն աղբիւրը բնութիւնն ինքն է եթէ լաւ ուշ տրուի, էական է եւ երբէք աչքէ վրիպելու չի գար, քանզի միակ առաջնորդող թելն է շատ մը վտանգաւոր կացութեանց մէջ անմոլար ընթանալու։

Իբր գործնական հետեւութիւն ուրեմն որ աստի կը բղխի՝ գնենք մի քանի գլխաւոր սկզբունքներ.*

Երբէք չծանրանալ «ը»ի վրայ, երբ ծանրութիւնը ինք միայն պիտի տանի առանց ուրիշ օգնականի։ Ուստի խորշելի է հատածները անով միայն կազմելը, շեշտի վստահելով, զի, ինչպէս տեսանք, շեշտի անընդունակ է նա։ Այս դատապարտելի են այն ամէն տողերը որ սապիսի կազմութեամբ են.

Ինչու համար կը | ցաւիս մեզմէ դու
Մինչեւ որ մարդը | գայ երեւնայ հոս
Երբ որ մըտայ քաղաքը | տեսայ հոն այն մարդիկը։

Բայց հատածներուն մէջ տեղուանքը կրնայ սուղ վանկեր կազմել առանց վրան բեռ առնելու, շեշտը միշտ յաջորդին տալով եւ ինքն ալ անոր վրայ կռթընելով, ինչպէս.

Երբ կը տեսնեմ ես մի մարդ
Որ կը սիրէ արդ ու զարդ

---

*Ինչպէս. Նեղը դնելով Գալլիոյ "ողջոյն պըւէտներ (Պուալոյ Թրգ. ii 83) Թող չը տըւաւ որ երեւնայ "նդ տող ըրկար (Անդ ii 91) ։ Աւելի "մասս ջանաց դրնել քան թէ բառ (Անդ ii 156)

ուր այլ եւս ոչ թէ լերկ ու մերկ «ըլ» է վանկը՝ այլ «ըլտ» եւ «ըլս»:

Ըստւածներէն արդէն ինքնին կը մակաբերուի որ տողին ծայրն ալ կարելի չէ «ը»ով վանկ կազմել, անկարող լինելով չեչտին սաստին տոկալու. ուստի եպերելի են հետեւեալ հանգիստները.

Իմ տեսած մարդըս
Քու չինած տունըդ

Իսկ տողին սկիզբը կամ մէջերը կրնաս բովանդակ ուժովդ ծանրանալ ը ին վրայ եթէ ինքն ալ զօրաւոր ուրիշ բաղաձայնի մը վրայ յեցուած է, զ. օ. Մ եւ Ն եւ ասոնց ալ յաջորդեն Դ, Թ, Տ, ձայները, օր.

Ըն՛ դ աստեղօք
Ըն՛ տիր ընտիր
Ըմ՛ բոստութեամբ
Ըմ՛ պահկելով
Ըս՛ քանչելի, եւայլն:

Սխալ կը լինի եթէ բաժանումը կատարես.

Ը՛ նդ աստ.
Ը՛ նտիր...
Ը՛ սքանչ.

զի այն Ն, Մ, Ս տառերն են որ «ը»ի ազդեցութեան տակ, խուլ հնչականութեամբ մը կ՚երկարեն չեչտը՝ որպէս թէ արձագանգելով:

«Ը»՝ Նայ տառերու հետ

Նայ տառերուն վրայ վերերը փոքր ակնարկութիւն մ՚րած էինք: Ընդհանուր հեղաբանութեան եւ ի մասնաւորի Տաղաչափութեան մէջ ա՛յնչափ մեծ է ասոնց կարեւորութիւնը որ աւելորդ չէ, կարծեմ, մի քիչ աւելի լուսաբանել, զի ասոնց բարւոք կիրառութիւնէն կախում ունի մեծ մասամբ՝ լեզուին արագ եւ սահուն կամ յամր ու ղանդաղ ընացքը:

Նոյն քերականութեան մէջ հեղուկ կամ գէջ բսուած են չորս տառեր (լ, մ, ն, ր) քանզի ուր ուրեք որ գտնուին՝ ջուրի պէս կը սահեցնեն ձայնը, ուստի եւ ո՛ր գրի հետ ալ որ ընկերանան՝

*անբաժան կը մնան անկէ, զի իրե՛նք պիտի գլորուին տան անոնց:*

*Ամբողջ հեգաբանական սիստէմը այս սկզբան վրայ հաստատուած է թէ՛ յունաց եւ թէ եւրոպացւոց մէջ:*

*Մենք թէ՛ տառերը եւ թէ ուղիղ մեկնութիւնն ունինք, սակայն դժբաղդութիւնն այն է որ գործնականին մէջ բոլորովին չեղած ենք հասարակ համաձայնութենէն եւ ասխական տափակութեան բացառիկ դիրք մ՚առած ենք, եւ այս դիրքը այնչափ հաստատուն հիմ բռնած է որ քերականութեանց մէջ վանկի բաժանումներն ալ ըստ այս խոտոր օրինաց աւանդուած են եւ բոլոր այբբենարաններն ալ այս հիման վրայ շինուած են:*

*Ըստ այսմ․*

a-gro-no-me

a-cro-po-le

mé-tro-po-le

Pé-ri-clès

I-gna-tius, *եւայլն:*

*Հայագրուելով պիտի գան*

ag-ro-no-me

ac-ro-po-le

met-ro-po-le

*պե–րիկ–ղէս*

*Իգ–նա–տի–ոս, եւայլն:*

*Մինչեւ հիմա ալ չեմ հասկցած պատճառը թէ ինչո՛ւ այսպէս եղած է: Արդեօք Մեսրոպի օրովը ուղիղ համեմատական էր յոյնին եւ ապա խանգարուեցաւ, թէ թարգմանչաց ժամանակին ալ այս էր լեզուին հանգամանքը: Անհնարին է վճռական պատասխան մը տալը:*

*Գիտենք որ Մեսրոպը նախասիրաբար յոյն այբուբենը աչաց առջեւ ունէր եւ անոր վրայ կը ձեւակերպէր հայկականը, «հանդիպեցուցանելով զհայ աթութեայն» յոյնին եւ կազմելով «ըստ անայլթաք սիլլոբայից Հելլենացւոց»: Ի՞նչպէս ուրեմն կը թերանար այս էական կէտին եւ կը շեղէր յունականէն: Այս կնճիռը լուծողը միմիայն հին ձեռագիրներու առոյգ գրչութիւնը պիտի ըլլայ: Դժբաղդաբար մինչեւ Ե․ դար եղող ձեռագիր մէջ տեղ չկայ, եղածներն ալ այնչափ անփոյթ եւ չփոթ են վանկա–*

*տութեան մէջ որ ստոյգ բան մը կարելի չէ անոնցմէ քաղել:*

*Կրնայ ալ մտածուիլ որ գուցէ լեզուին ասիական բնութենէն էր անընդունակ լինել թրթռուն սահեցումներու, ինչպէս չեն Երան եւ Տուրան լեզուներն ալ: Պարսիկին եւ Թուրքին բերնին մէջ բոլոր* կրա, թրօ, բրօ, կլօ, սրա, քնա, կնօ *եւ այլ այսպիսիք պէտք է որ տարածուին՝ տափակնան եւ լինին* կըռա, թըրօ, բը-րօ, կըլօ *եւայլն: Եթէ իրաւ է այս տեսութիւնը, շօշափման կէտ մի եւս կուգայ հաստատել այն լեզուներուն եւ հայկականին մէջ ոչ միայն բառական փոխառութիւններու՝ այլ եւ ձայնաբանական հաղորդակցութեան գոյութիւնը: Եւրոպացի հայագէտք շատ ուշադիր եղած չեն երբեք այս հանգամանքին:*

*Թէ՛ հնագոյն եւ թէ յետամուտ, ինչ որ ալ ըլլայ, կրնանք սակայն ուղղել այս դրութիւնը եւ դնել լեզուն եւրոպական դաշնակցութեան մէջ, գոնէ գրաւորաբար:*

*Ճիշդ այս նպատակաւ էր որ, ասկէ տարիներ առաջ, նոր Այբբենարան մը թելադրած էի ծանօթ գրագէտ Աբրահամ Մուրատեանին, որ լոյս տեսաւ ալ, սակայն չեմ գիտեր թէ սպառեցա՞ւ թէ չտարածուած փճացաւ, զի վերահաս դժբաղդութիւնները այլեւս առիթ չձգեցին այս կարգի բարեշրջութեանց հետամտելու, որով մինչեւ հիմա ալ այն թիւր՝ հաշմ եւ յոռի դըրութիւնը շարունակութեան մէջ է:*

*Եթէ դժուարին երեւի մի անգամէն ընդհանուր այս սխալը ուղղել, թէպէտեւ ամենեւին դժուարութիւն մը չկայ, բաւական է քերականներուն նոր ուղղութիւն մը տալ, գոնէ տաղաչափականին մէջ այժմէն իսկ կրնանք դարմանը մտածել եւ գործադրել: Ասոր համար բաւական է հետեւեալ մի քանի հրահանգներուն ուշադիր ըլլալ:*

1· *Նախընթաց բառին վերջավանկ Ը էն ետքը, եթէ յաջորդ բառին առաջին գիրը բաղաձայն մ՚է, լաւ է վանկ չկազմել որ այն գիրասահ տառերուն ալ դանդաղութիւն չբերէ, ինչպէս.*

ծանըր բեռ
յամըր գընացք
կոնըղ ծառի, *եւայլն:*

*ուր ո՛րչափ ալ շեշտը «Ը»ին վրայ չըլլայ, գնացքը դարձեալ կ՚ազդուի եւ անցման մէջ յամր եւ անախորժ* թօն *մը կը մտնէ:*

2· *Այս անյարմարութիւնը մասամբ դարմանուած կը սեպ-*

*ուի, եթէ «Ը»ին նախորդող բաղաձայնը, փոխանակ մէկ ըլլա-լու՝ երկուք է, որով շեշտը աւելի կը հեռանայ «Ը»էն եւ հեռաւոր բաղաձայնին վրայ կ'իյնայ·*

*ա՛նգըղ, ա՛ր կըղ, ա՛ս տըղ,*
*թա՛ն ձըր, գո՛ւս տըր, ա՛ն դըր, եւն:*

3· *Այս դարմանը բոլորովին անօգուտ կը դառնայ եթէ* Նայ *ին յաջորդող գիրը ձայնաւոր է: Սահական օրինօք անկարելի եւ անհնարելի է յայնժամ Ըին վրայ շեշտ մը պահել: Եւ ոչ միայն այսչափ, այլ պէտք է բոլորովին անհետանայ ալ հոն «Ը»ը: Ուստի՝ մի՛ հաւանիր երբէք, ինչ որ ալ ըլլայ պարագայն՝ ըսելու*

յամըր ընթացք, քաղցըր աւաչ,
անգըղ օդահերձ, աստըղ առաւօտեան
մանըր արծաթ, դափըր հատանել, *եւն.*:

*այլ միացնելով զեղչէ՛ զանգաղ վանկը*

յամր ընթացք
քաղցր աւաչ
դափր հատանել

*ըսէ նոյնպէս, յոյժ վայելչաբար*

Բարձր աղաղակ, դառն արտասուք, լեառն Արարատ, եւն:

*ուր սահումները դիւր եւ ախորժ կ'ընծայեն:*

4· *Դիտելի է որ* Նայ *տառերուն մէջ ալ զանազանութիւն մը կայ· սղման ընդունակները առաւելապէս* ր *եւ* լ *ձայներն են, իսկ* ղ, մ, ն՝ *ոչ այնչափ: Մինչ առաջինները գրեթէ միշտ եւ ամէն տեղ կրնան սղուիլ, վերջինները շատ քիչ անգամ եւ որոշ պայմաններու տակ միայն սղման ընդունակ կ'երեւին: Այսպէս զոր օրինակ·*

*Երբ տողն սկսող առաջին բառը* ր *կամ* ռ *պարունակէ՝ կըրնանք համարձակ եւ անարգել ամփոփել ձայնը եւ ըսել միավանկ եւ միանուագ*

գրա, դրա, ժրա, լրիւ, խռով, քրիստոնեայ, *եւն., բայց երբ* ղ, *կամ* մ *կամ* ն *է՝ նոյն դիւրութիւնը չենք զգար, պէտք է որ յայնժամ նիւթապէս ալ երեւան ելլէ «Ը»ը, ինչպէս յաւելեայն զգալի է, եւ ըսենք*

հընակարկատ, սըղագրութիւն, հընարաւոր
քըմահաճ, տըղայական, *եւն.*:

5· *Այս կանոնը տողամիջի դէպքերուն ալ իր ոյժը կը պա-*

*հէ, երբ նայախումբէն առաջ գտնուող բառը բաղաձայնով վերջացած է.*

սիրուն կըղզեակ, եփուն կըղմինտր,
փայլուն թըղթով, հընչուն ֆընար, *եւն.:*

6. *Իսկ եթէ ձայնաւոր է նախընթաց գիրը՝ ըղումը ոչ միայն օրինաւոր այլ եւ պարտադիր է հոն,*

Ահա ֆո   սխալն
Արի՛   գնա հոն
Եթէ   ըլացաւ
Նայէ՛   Շմաւոն
Ինչո՞ւ   զմայլիլ

*զի այս դէպքերուն մէջ նայախմբին առաջին գիրը նախընթաց բառին վերջին ձայնաւորին կ՚երթայ*

Ահա   ֆոս — խալն
Արիզ — նա-հոն, *եւն.:*

7. *«Ը»ի մի ուրիշ պարագայ ալ պիտի յիշեմ որ նկատողութեան առնուած չէ, այլ որ սակայն, եթէ լաւ ըմբռնուի եւ գործածուի, հայ տաղաչափութեան մէջէն մի մեծ խոչընդոտ եւս պակսեցուցած կ՚ըլլանք: Մտացածին բան մը չէ ինչ որ պիտի առաջարկենք, այլ նոյն իսկ ձայնականութեան մէջ է իր գոյութիւնը: Բաւ է միայն ուշ դնել ձայնի յօդաւոր արտաբերութեան, պիտի տեսնուի որ «Ը»ը գրեթէ ամէն տեղ է, թէ՛ նախորդ բաղաձայնին ոյժը պահելու, եւ թէ՛ իբր միջնորդ՝ նախորդին եւ հետեւորդին մէջ անցում կատարելու: Այս դէպքերուն մէջ իր հնչականութիւնն ալ ա՛յնչափ նուաղած կ՚ըլլայ որ հազիւ կը լսուի եւ վանկ կազմելու ալ անզօր կը մնայ:*

*Միայն մեր լեզուին մէջ չէ այս երեւոյթը, այլ առհասարակ: Ո՞վ չգիտեր գաղղիերէնի մէջ համր* e *ին խաղացած դերը որ կը գրուի այլ վանկ չհաշուուիր տաղաչափութեան որոշ պայմաններուն մէջ: Նոյնպէս ամէն օր, այս երկրին մէջ, չե՞նք լըսեր աննահանջելի* Էնտը *տարապայման երկարեալ* ը *ով, թէ՛ իբր չաղկապ բառեր իրարու զօդելու եւ թէ մանաւանդ իբր սուղ հանգիստ՝ յիշողութիւնը ամփոփելու:*

*Կրնանք ուրեմն բացէ ի բաց վանել հանել զայն հաշիւէն եւ գրելով հանդերձ չգոյ համարել ամէն այն տեղեր ուր բացի այս*

*Նուազագոյն դերէ՝ ուրիշ կարեւոր պաշտօն մը չունի կատարելու:*

*Մենք մեր Պուալօի Թարգմանութեան մէջ մեծ առաւելութեամբ օգտուած ենք այս պարագայէն՝ ըսելով*

*«Կ'ատեմ ես այն հեղինակնե՛ր՞ը սընափառ»*

*ուր վերջընթեր բառին ծայրի «ը»ը բոլորովին լռած է, նախընթաց զօրաւոր շեշտին պատճառաւ:*

*Կարծուածէն շատ աւելի յաճախադէպ են «ը»ի այս պատահմունքը եւ շատ մեծ դիւրութիւն գրողին, եւ տողերուն ալ յոյժ գեղեցիկ սահ եւ շարժ կուտան եթէ պատշաճապէս ի կիր առնուի:*

*Ամփոփելով այս ամէնը մի կարճ եւ ընդհանուր բանաձեւի մէջ՝ ըսենք.*

*Զգուշացիր «ր»ի վրայ բեռ դնելէ:*

*Մէկդի նետէ գրիչը եթէ պիտի գրես*

Աստըղ մը տեսայ որ կը փայփըլէր:

*կամ* Կըրակի մէջ որ դըրաւ երկաթը:

«ԿԸ»

*Կիլիկեցւոց ժամանակէն մտած կ'երեւի այս անշահ մասնիկը բայց թէ ի՛նչ ազդեցութեան տակ եւ օտար ո՛ր բառին համապատասխանելու՝ չեմ գիտեր: Եւ «կը» գրչութիւնը իւր նախնական ձեւն ալ չէ. ի հնումն կ'երեւի «կու» էր, ինչպէս ցայսօր ալ Ակնայ եւ մի քանի այլ գաւառաբարբառներուն մէջ պահուած է, որոյ հետքերը Պոլսեցւոց լեզուին մէջ ալ մի քանի բառերուն վրայ կը տեսնուի, ինչպէս.* կուլամ, կուգամ, կուտամ:

*Շարադասութեան կարգն ալ տեղէ տեղ կը տարբերի: Կան որ սկիզբը կը դնեն, կան ալ որ յետադաս կը գործածեն* գրէ կը, բերէ կը, *կան ալ որ թէ՛ առաջ եւ թէ յետոյ.* կուտայ կը, կ'առնէ կը: *Երանի թէ բնաւ մտած չըլլար լեզուին մէջ ուր ոչ մի երանգ եւ առաւելութիւն կը բերէ մտածութեանց եղանակին վրայ, բայց ազատ գնացքի խոչընդոտ ըլլալէ: Աս է որ ոմանք փորձեցին ալ խափան վտարել իրենց գրուածքներէն՝ բայց չընդհանրացաւ սովորութիւնը եւ քանի որ կայ ու կը մնայ՝ չենք կրնար հաշւի չառնել:*

*Ուստի լաւագոյն խորհուրդը որ կրնայինք տալ սա է թէ.*

1. *Ուր որ կարելի է՝ անխնայ վտարել.*

2. *Եթէ մէկէն աւելի բայեր կան իրարու յաջորդող, բաւ համարել առաջին «կը»ն, միւսներն անոր ենթարկելով, ինչպէս.*

կը տեսնէ, քննէ, զննէ, *եւն.*:

3. *Ինչպէս սովոր ենք ձայնաւորով սկսող յետագայ բառէն առաջ, նոյնպէս վարուիլ նաեւ լուռ կամ կիսաձայն «հ»էն եւ «յ»էն առաջ, եթէ այնպէս պահանջէ տողին ոտքը կամ ձայնի դաշնաւորութիւնը, ինչպէս կը տեսնեմ թէ ճարտարապէս ըրած են ոմանք*

կ'հառաչէ, կ'յառաջէ
կ'հանէ, կ'յուսայ:

## «ՄԸ»

*Վերը «ը»ի առթիւ եղած դիտողութիւնները հարկ չեն թողուր երկարօրէն խօսելու «մը»ին վրայ. միայն սաչափը բաւ ըլլայ ըսել որ չկայ տաղաչափութեան մէջ ա՛յնքան տգեղ՝ անախորժ եւ անտանելի վանկ քան այն որ չեշտեալ «մը»ով կը կազմուի: Դժբաղդաբար սակայն կը տեսնեմ որ շատ շատերը կ'իյնան այս վտանգին մէջ:*

*Կրնանք առանց վրան կոխելու, երագ եւ սուղ անցմամբ ըսել.*

*«Եւ մա՛րդ մը որ քեզ կ ըդաւէ»*
*«Տո՛ւն մը կար անդ կիսակործան»*

*քանզի շեշտը նախընթաց վանկին վրայ է, իսկ «մը»ն հոն կէս բաց՝ կէս գոց խուլ վանկ մը կը կազմէ, ոտքի պակասը միայն լեցնելու համար, առանց ո՛ եւ է ուշադրութիւն գրաւելու:*

*Բայց անտանելի է եթէ շեշտելով հատած կազմես եւ ըսես*

«Ինչպէս մարդ մը՛ որ կը դաւէ»
«Արի՛ բան մը՛ ըսեմ քեզի».

*Ասկէց աւելի տափակ՝ անշնորհք եւ ողորմելի կազմուածք չկրնար երեւակայուիլ: Հազարաւոր լաւ կամ չափաւոր տողերուն մէջ եթէ մէ՛կ այս նմոյշը գտնուի՝ բաւական է տխուր գաղափար տալ հեղինակին ճաշակին վրայ:*

*Ցայտնի է որ ինչպէս «կը»ն, նոյնպէս եւ «մը»ն թեթեւ–*

ցընելու հնարքներէն մին է, ձայնաւորի հանդիպած պահուն, «ը»ը գեղչելը: Բայց ճաշակը, զոյգ ընդ քերականական պահանջից, կը ցուցնէ որ ամէն տեղ, անխտիր, այս գեղչումը օրինաւոր եւ վայելուչ չէ: Կրնանք, դ. օ. շատ լաւ ըսել·

«Բան մ'ալ կայ որ»

«Գետին մ'էր դալար»

«Տուն մ'իր բընակչօք»

Բայց ո՛րն առջեւ այս համը չենք առներ· խորթ եւ անախորժ կուգայ ականջին՝ լսել

«Բան մ'որ»

«մարդ մ'որ»

«ծեր մ'որ» ի պէս կազմութիւնք որ արտասանութեան ծանրութենէն զատ երկդիմութեան ալ տեղի պիտի տային, շըփոթուելով «մօր»ին հետ:

Նոյնպէս, եթէ ոչ նոյնչափ, պախարակելի գեղչումներ են «ու»ի եւ «ե»ի առջեւ պատահածները, օր·

«Տեղ մ'ուր կեցած...»

«Մարդ մ'երբ լըսէ...»

Մի ուրիշ հնարք ալ երբեմն գործածուած կը տեսնեմ ոմանց կողմանէ եւ անհաճոյ ալ չէ· այն է շըջել «մը»ն «ըմ»ի եւ ասով սրբագրել «ը»ի անախորժ հանդիպումները: Վասպուրականի յատուկ կ'երեւի ասութեան այս կերպը, բայց որ ճարտար գրչի տակ շատ պատշաճաւոր դիրք կրնայ գրաւել: Կը յիշեմ տեղ մը կարդացած ըլլալ

«Կուցըմ ջուր տուր»

Ի՛նչ գեղեցիկ շրջում մ'է, դանդաղ եւ ծանր

«Կուց մը ջուր տուր»ին

«Մը»ին մասնաւորութիւններէն մին ալ այն է որ ձայնաւորներուն առջեւ չէ միայն, այլ անձայն «ի»ի եւ «յ»ի եւ մինչեւ իսկ բաղաձայններու, մանաւանդ «մ»ի, առջեւ ալ կրնայ թօթափել իր «ը»ը: Շատ յաջողապէս ըսուած է

«Իւրաքանչիւրն ամփոփուած
նեղ խորշի մ' մէջ առանձին:

Եւ այլուր

«Թաւ ծառի մ'տակ»:

«Ծանր բեռի մ'յոգնութենէն»:

«Ուր պատանի մ' կը ճըճչէ»:

Բայց ինչո՞ւ այս ամէն հնարք եւ մանրակրկիտ հեթեթանք. ինչո՞ւ չգործածել երբեմն ալ գրաբարի «մի»ն որ շատ մ'անտեղութեանց առաջքը կ'առնէ եւ շատ ալ վայելուչ կուգայ տաղաչափութեան՝ կեանք եւ կենդանութիւն տալով խօսքին: Ռուսահայք որ «մը» չունին եւ «մի»ով կը վարուին միշտ, միթէ մեզմէ նուա՞զ բանաստեղծ են, միթէ մեզմէ նուա՞զ ճաշակ եւ գեղագիտութիւն կը ցուցնեն իրենց գրուածոց մէջ:

Տարօրինակ հոգեբանութիւն մ'է այս մերը: Կան ոմանք որ կարծես երդուեալ են չգործածել բառ մը՝ ձեւ մը որ գրաբար կը հնչէ: Պատճա՞ռ:—Վասն զի գրաբար է: Ողորմելի մտայնութիւն:

Հին «Մշակ»ներուն մէջ գեղեցիկ բանահիւսութեան մը հանդիպեցայ որ հետեւեալ սիրունիկ գողտրիկ տողերուն մէջ այնչափ վարպետօրէն եւ բուն իրենց տեղը գործածած է թէ՛ արեւմտեան եւ թէ՛ արեւելեան «մին» որ տարակոյս չթողուր թէ ի՛նչ հրաշքներ կրնայ գործել ճարտար գրիչ մը.

ՎԱՆԱՅ ԳԻՇԵՐ

Սարի ուսին՝
Ջինջ լուսին
Ժպտեց մեղմիկ, անուշակ,
Ու վար ծաթեց
Արծաթեց
Լիճը խաղաղ, մանուշակ:
    Լիճը Վանայ՝
    Ներվանա,
Կ'օրօրէ ձին կարապին.
    Մակոյկ ՄԸ չիք
    Ու մշիկ
Քուն է մտեր քարափին:
    Լճի եզերք՝
    ՄԻ հեզ երգ
Կը թրթռայ բոլոր դին
    Ահա ասդին
    Նաւաստին

Աչքը յառած ոլորտին, եւն.:

Գրողը Տաճկահայ մը կ'երեւի եւ քերթողական զուարճալիք մը տալ ուզեր է յորում եւ կատարելապէս՝ յաջողած, թէպէտ մի քիչ ըըշէրշով:

## ԵՐԿԲԱՐԲԱՌՆԵՐ

Ասոնց մէջ կան որ թէ՛ միավանկ եւ թէ՛ երկավանկ կրնան գործածուիլ, ըստ տեղւոյն եւ պարագային, ինչպէս գ. օ. իա զոր կրնանք նկատել մերթ մի վանկ

միա      բաճ
ծիա      ծաճ

մերթ ալ երկու վանկ

ճի      աq
հի      աց

Աւելի սահմանափակ է իո յորմէ հազիւ մի քանի նմոյշ ունինք

բարիոֆ
Սարդիոճ
Բրաքիոճ
ֆաճիօճ

Իսկ ուա, ուէ, ուի, ուո, երբէք անջատուելու չեն, բացի թերեւս խռնման պարագային, քանզի ասոնց «ու»ն նոյնացած է «ով»ին հետ ուստի եւ միշտ մէկ վանկի յարգ եւ չափ պէտք է ունենան: Տարականները օրինակ չառնենք, ան բոլորովին զատ արուեստ է, ինչպէս ցուցցինք, եւ անոնք, որքազան հեղինակները, պարտական էին այնպէս ընել երաժշտական հարկի տակ: Իրաւունք ունէին ըսելու, գ. օ. աստըւած, ըզ ը ճա, փառըֆ ֆեզ, եւն., ըստ պահանջել չափու եւ նուագի եւ յայամ ո՛րչափ աւելի հմուտ եւ գերազանցապէս գեղագէտ կը հանդիսանան անոնք քան զմեզ: Եթէ լաւ մտիկ դրուեցաւ վերը «ր» ձայնի բնական յաճախութեան վրայ ըսուածներուն, պէտի տեսնուի որ նախնիք ուրիշ բան ըրած չեն՝ բայց եթէ յայտնի գնել հոն ուր «ը»ը բընականէն կայ եւ կը լսուի: Վերջերս մեր ոգէտ երաժիշտները ոչ նուազ ոգէտ քերական վարժապետներէ ազդուելով, երբ թէ

*ուղղել փորձեցին Նախնեաց կարծեցեալ սխալը եւ ուսուցին եր-գել*

ըզ նա՝ ըզընա *ի տեղ*

աստուած՝ աստըւած *ի տեղ, եւն․։*

*Ո՞րչափ խակութի՛ւն եւ ականջի անընտրողութիւն, եւս եւ կատարեալ անգիտութիւն չափական օրինաց։*

*Հիմա քանի որ մեր այժմու դրութեամբ այնպիսի հարկերու տակ չենք եւ մեր չափականութիւնն աւելի վանկական է քան նուագական, պէտք չէ անհարկի «ը»երով դանդաղեցնել տողերուն գնացքը։*

*Բացառութիւն կը կազմեն* ում *լծորդութեան սհմ․ անկատարները եւ* էլ *ով բարդեալ եբրայական անունները որք միշտ երկու վանկով պէտք է գործածուին, գ․ օ․*

կը թողու ի

կը գեղու ին

էմմանու *էլ*

Ուրի էլ, *եւն․։*

*Թուսահայոց մէջ այս զանազանութիւնն ալ կորսուած է․ չատ տարօրինակ հնչեց ականջիս երբ առաջին անգամ լսեցի*

Սամ վէլ

Ման վէլ

Այի *խումբն ալ որ ակներեւ երկավանկ է, կրնանք երբեմն միավանկի վերածել եթէ տեսնենք որ ասով աւելի սահուն կ՚ըստանայ ձայնը, բայց յայնժամ այնպէս մը կարգադրուելու է չարժը որ սղումը ինքնին դիւրանայ եւ մի վանկ հնչէ, օր․*

Մերայի՞ն աշխարհ,

Տնային իրեր,

Մայիս ամսոյ մէջ․

Հայել անճըրիթ,

Կային անդ ոմանք, *եւն․։*

*ուր յապաւեալները պէտք է հնչուին իբր* այն, այս,

այլ *եւ ոչ թէ զգալի ընելով «ի»երը։*

էի․ *Նոյն ազատութիւնը արդարացի կը տեսնեմ նաեւ այս ձայնին համար ալ որ եթէ պատչաճապէս սղուի՝ երադութիւն, կայտառութիւն կը մտնէ քայլին մէջ* էյ *(էյ) հնչմամբ, փոխանակ* է—ի*–ի, օր․*

«Զէին ու չեն այն հին երազներն իրական» *ուր չէինին չէյն ամփոփմամբը տողը կը մնայ մետասանոտնեայ:*

ԻԷ. *Նոյն ազատութիւնը կը պահանջէ նաեւ այս խումբը որով վանկ մը կը պակսի տողէն, ձայնի արագ սահումն անըզգալի ընելով այս պակասը, օր.*

Զի՞ է զի անձինf . . .
Մի՞ էր թէ երկու . . .
Եւ տիեզերաց . . .
Ըստընդիեցիկ, *եւն.:*

ՈԻ. *Ցաճախեցաւ վերջերս այս չաղկապին կիրառութիւնը, պարզապէս գրաբարի Եւէն փախչելու համար, կարծեմ:*

*Եւ յայտ օրինակ կը հանդիսանայ Ս. Գրոց աշխարհաբար թարգմանութիւնը ուր ռամկանալ կարծելով անհամ «ու»երով լեցուցին գիրքերը, առանց ուշ դնելու որ ոչ մին բացառաբար գրական է եւ ոչ միւսը բացառաբար աշխարհիկ:*

*Հին լեզուին մէջ երկուքն ալ իրենց որոշ կիրառութիւնն ունին եւ կրնան ալ երբեմն անխտիր գործածուիլ: Ունինք, զ. օ.*

Տանուտէր, *բայց ոչ* Տանեւտէր,
Ագուհաց, *բայց ոչ* ագեւհաց

*եւ փոխանակաւ*

Հալումաշ Հալեւմաշ
Այրուձի Այրեւձի
Ելումուտ Ելեւմուտ, *եւն.:*

*Վնաս մը կամ անտեղութիւն մը չեմ տեսներ եթէ արդար չափով եւ ճաշակաւոր կերպով գործածուի, բայց ճիշդ այս պայմանն է որ զանց առնուած կը տեսնեմ: Գլուխ մը կամ պարբերութիւն մը «ու»ով սկսելը շատ ախորժելի բան մը չէ արձակին մէջ: Ոտանաւորի մէջ կարելի եւ ներելի է բայց ինչ ինչ զգուշութիւններով.*

*Եթէ նախընթաց տողին վերջին վանկը ձայնաւոր է, հետեւեալ տողը «ու»ով սկսելու չէ, որպէս զի իրարու վրայ բարդուելով անախորժ բաղխում յառաջ չգայ.*

. . . . . . *ու*
*ու* . . . . . . .

*Զգուշանալու է նոյնպէս որ տողի մէջ ալ ուր ուրեք «ու» կայ՝ հետեւեալի ձայնաւորով չսկսի*

ու ով որ,
ու էր երբեմն,
ու ինչ որ, *եւն․*։

*Բացառապէս ներելի են այս հանդիպումները եթէ* ու *եւ յաջորդ ձայնաւորը միանալով մի՛ եւ նթ վանկ պիտի կազմեն,*
ու° աստուածային
ու° այնպէս
ու° որոտ
ու° ոլոր, *եւն․*։

*Կան անշուշտ մոռցուած ուրիշ մանրամասնութիւններ ալ որ գործնականին մէջ կը պատահին, այլ դժուար չէ այդ անհարթութեանց յաղթելը եթէ մինչեւ հիմա բացատրուածները լաւ ի միտ առնուին։*

*Ասոնք սակայն տեքնիքական մասն էին արուեստին, իմա տաղձներու ընտրութիւն՝ պատրաստութիւն՝ ագոյց եւ հանգոյց եւ որ ի կարգին։ Կայ սակայն ընդհանուր հայեցողական մաս մ'ալ, իմա՛ ճարտարապետականը, որ միայն կարող է չէնքին տալ իր վերջին կատարելութիւնը եւ ինքնուրոյն յատկութիւնը որով կը զանազանուի եւ կը բնորոշուի նա։ Խօսինք հիմա այս ընդհանուր հանգամանաց վրայ։*

## Ա․ ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ

*Գեղեցկութիւնը ոչ կը սահմանուի՝ ոչ կը նկարագրուի․ կ'զգացուի միայն․ եւ զգացումներն ալ մտաւոր զարգացման աստիճանին համեմատ անհատէ անհատ կը տարբերին։ Երանգներ՝ նրբութիւններ կան որ անվարժ եւ անմարզ հոգիներուն մերձենալի չեն, նոյնպէս արատներ՝ թերութիւններ կան որ հասարակ աչքերու չեն զարներ, այլ սուր եւ քաջակիրթ աչաց միայն նըշմարելի են։ Ասոնց դատաստանն է որ քերթուածի մը դիրքը կարգը կ'որոշէն բանահիւսութեան մէջ։*

*Ընդհանուր առմամբ սակայն կրնայ ըսուիլ որ գրուածք մը գեղեցիկ է*

1․ *Երբ ախորժալուր է․*

2. Երբ բառերն ընտիր եւ հարազատ են.
3. Երբ կարգը բնական կամ վայելչապէս ձեւաւոր է.
4. Երբ ամէն ինչ իր բուն տեղը եւ համեմատական սահմանին մէջ է. ոչ խրթնանալու չափ կարճ եւ մթին եւ ոչ ալ ձանձիր տալու չափ երկար եւ տարածուն:
5. Երբ քերթողաց շնորհեալ ազատութիւնն իր վայելուչ կիրառութեան մէջ է, առանց գեղծմանց յանգելու:
6. Վերջապէս՝ երբ լեզուն կոկ եւ մաքուր եւ քերթողավայել է, առանց անհամ տափակութեանց եւ անճոռնի եւ անվայել նմոյշներու:

Թէեւ մինչեւ հիմա, յընթացս գործոյս, տրուած բացատրութիւնները հարկ չեն թողուր կրկնութեան, բայց ես աւելի կը սիրեմ երկարութեան մեղադրանքի տակ իյնալ քան մութ եւ անիմանալի մնալ: Ուստի քաղուածօրէն պիտի ըսեմ.

1. Ախորժալուր է գրուածք մը եթէ կոկորդայիններու մօտ առ մօտ յարադրութեամբ խինջիւններու չմերձենան ձայները. եթէ թաւ բաղաձայներու խռնումն ազատ գնացքը չարգիլէ. եթէ ձայնաւորներու անընդհատ յաջորդութիւնը երկարատեւ բերանբացութեան չտանի:

2. Բառերն ընտիր եւ հարազատ են եթէ բուն հայկական են ընտիր նախնիքներէն գործածուած կամ յետին դարերուն կերտուած՝ այլ հայկական կնիք կրելով, զի աշխարհիկ լեզուին մէջ պէտք չունինք ոսկի դարու՝ արծաթի դարու եւն., խտրութիւններ ընելու. բաւական է որ գեղեցիկ ըլլայ բառ մը, հոգ չէ թէ ո՛ր դարու մէջ գործածուած: Իսկ եթէ պակսին լեզուին մէջ նոր գաղափարներու յայտարարներ, եւ այս նկատմամբ կրնանք ըսել թէ շատ բաներ կը պակսին մեզ, ազատութիւն է, մինչեւ իսկ հարկ է նոր բառեր ստեղծել եւ ահա հոս է դժուարութիւնը:

Հիմա բաւական առատ կոյտ մ'ունինք նոր բառերու, որոնց մէջ կան որ շատ յաջող են եւ պաշտպանելի. կան ալ որ, եւ դժբաղդաբար մեծ մասը, յոփ՝ անարուեստ եւ անվայել են:*

Ընտիր յօրինուածութիւններ են, զ. օ. մանրէ, սուզանաւ,

*Մեր «Հայերէնի գեղծումներ»ին մէջ բառակերտութեան արուեստականին մասին փոքր ի շատէ խօսած էինք, տե՛ս անդ:

սաւառնակ, ընդծովեայ, յածանաւ, հեռագիր, հեռախօս, լուսարձակ, լուսարգել, եւն., եւն.: Այլ ատոնց քով ի՛նչ դժոխալուրներ ալ ունինք որ փոխանակ լեզուն հարստացնելու՝ խանգարել ապականել միայն կը ծառայեն:

Այս կարգէ են, ըստ մեծի մասին, գիտական ըսուած անհեղեղութիւնները զորս անգրագէտ գիտնականները իրաւունք կը համարին դարբնել եւ շրջաբերութեան դնել առանց դոյզն իսկ կասկածն ունենալու թէ ի՛նչ մահացու հարուած կուտան լեզուին:

Կը խոստովանիմ որ մենք բժիշկներս ալ քիչ յանցապարտ չենք այս կէտին, մեր հրաշակերտներն են կցաղէտապները, ճանճատենդերը, կեղծմաշկները, այլովքն հանդերձ, որք ոչ միայն անճաշակ ըլլալու թերութիւնն ունին, այլ շատ անգամ ալ սխալ: Թրուսօի պէս մեծ հեղինակութիւն մը գաղղիացի բժիշկները կը ձաղկէր հապճեպով նոր բառեր կերտելու մարմաջին համար, առարկելով թէ գիտական ծանօթութիւնները օր աւուր ճշդուելու եւ փոխուելու ենթակայ ըլլալով այսօրուան ուղիղ կարծուածը կրնայ վաղը սխալ դուրս գալ եւ սխալ բառը, արդէն ընտելացած ըլլալով, կը մնայ լեզուին մէջ:

Լաւագոյնը՝ ժողովրդին գիտցած եւ գործածած բառը գործածելն է, ինչպէս կը յանձնարարէ այն մեծ վարպետը:

Արդ՝ եթէ գաղղիացւոց համար այս զգուշութիւնը՝ այս խղճահարութիւնը կայ, մե՞նք ի՛նչ համարձակութեամբ ձեռներէց կը լինինք այսչափ թեթեւօրէն խաղալու լեզուին հետ, մենք որ տակաւին ոչ գիտական խոր հմտութիւն ունինք եւ ոչ գրական բաւարար պաշար, ի բաց առեալ մի քանի բացառութիւնները:

Թող գիտական բառերը նորակերտ բառերով չբացատրուին, հոգ չէ, թող, առ այժմ, կամ բուն եւրոպականը գործածուի, կամ ռամիկ հայկականը՝ եթէ կայ: Եթէ բախտ ունինք, կուգայ ժամանակ մը որ մեր լեզուն ալ պաշտօնական գիրք եւ կարգ ըստանալով մեր մէջ ալ կը կազմուին Ակադեմական մարմիններ, ձեռնհաս հեղինակութիւններ, եւն., որ այս ամէն պէտքերը գերալրապէս կը հոգան եւ կը տնօրինեն: Այս է գիտական լեզու մ'ունենալու միակ պայմանը, ուրիշ ի՛նչ որ ալ փորձուի՝ ընդունայն եւ ապարդիւն ջանք է:

3. Բնական եւ Շրջուն կարգ բացատրութիւնները նոր են եւ գաղղիերէնի ազդեցութեան տակ կ'երեւի մեզ ալ անցած է գաղափարը, եթէ ոչ՝ մենք բնական ըսուած կարգ մը չունինք խօսքի համար եւ ոչ ալ բնութեան մէջ այդպիսի կարգ կայ: Ենթակայ՝ Յօդ եւ Ստորոգելի տրամաբանական տարերքը անպատճառ այս շարուած կարգով մնալու պայմանին մէջ չեն. կրնան ալ տարբեր դիրք առնել, եթէ իմաստը այնպէս պահանջէ: Այսպէս են բոլոր հին լեզուները, յոյն եւ մերը, մինչ գաղղիականը, ինք աւելի ընտելականին վրայ խօսելով, անյեղլի օրինօք կապուած կաշկանդուած է նախաձուլեալ կարգի՝ շարքի մը. դնել նախ ենթական, ապա բայը, ապա խնդիրը: Բացայայտութեան եւ ճշդութեան տեսակէտէն ունի սա իր առաւելութիւնները, այլ բանաստեղծական ազատ թռիչքներու համար աւելորդ կապանք են եւ թուլութեան կը տանին: Ասոր համար է որ նոյն իսկ գաղղիացի ընտիր հեղինակք, շեղելով քերականական այս պարտաւորիչ պայմաններէն՝ գեղեցիկ յեղաշրջութիւններ կը մտցնեն խօսքին մէջ եւ նորօրինակ ձեւադրութիւններով գրաւիչ յանկուցիչ կ'ընծայեն բացատրութիւնները:

Հայերէնը պէտք չունի այս ճիգերուն, հայ խօսքին կարգը արդէն շրջուն է. միայն թէ գործ ճարտարի է գիտնալ օգտուիլ այս առաւելութենէն առանց ծայրայեղութեան տանելու, զի ամէն ինչ անպատճառ շրջել ձեւափոխել փորձելը մթագնութեան կամ ճամարտակութեան կ'առաջնորդէ շատ անգամ: Պատմականներուն մէջ լաւ է հանդարտ ընթացքի հետեւիլ, իսկ կրից արտայայտութեան մէջ շրջուն եւ խիզախ:

4. Ամէն բան իր բուն տեղը եւ իր համեմատական չափին մէջ դնելը գրելու արուեստին գաղտնիքներէն մին է եւ կրնամ իսկ ըսել՝ մեծագոյնը: Կրնայ գրուածք մը ուրիշ ամէն մասամբ անըստգիւտ լինել, բայց, եթէ անկապ եւ անկարգ է, աւելորդ միջանկեալներով խճողեալ եւ ձանձրալի կրկնութիւններով ճապաղեալ, տեղ մը քան զարդար չափն անցած՝ այլուր քան զարժանն երկար եւ ճոռոմ, այնպիսի գրուածք մը չկրնար հաճութեան հաւանութեան թելն առնել: Ամէն բան իր տեղը եւ չափովը ըսելը յանկուցիչ շնորհքներէն մին է արուեստին: Դեռատիները որ սովորաբար հակամէտ են ուռուցիկ ոճին, մեծ դժուարութիւն պիտի կրեն, գիտեմ, զսպել այդ եռանդը, այլ սակայն համոզ-

ուելու են որ յաջողութիւնը հոն է։

Բառ մը, ոճ մը, դարձուած մը, մի՛ իսկոյն թուլանար ընդգրկել եւ կիրարկելու եթէ տեղը չէ, կամ աւելորդ է։ Քիչ բան ընդունիլ եւ շատ բան զոհելը լաւ գրելու առաջին պայմանն է։ Տարիքը եւ փորձառութիւնը պիտի բերեն անշուշտ այս համոզումը բայց լաւ է որ վարժութիւնը այժմէն իսկ կանխէ։

5. Քերթողական ազատութիւնք

Գիտենք որ չափական եւ յանգական նեղիչ կաշկանդումները նկատի առնելով՝ ինչ ինչ ազատութիւններ թոյլատրուած են քերթողին. զ. օ. յաւելուլ՝ յապաւել՝ շեղել սովորական պողոտաներէ։ Սակայն վտանգը հոս է որ զեղծման չզառածի այս առանձնաշնորհումը։ Սովորական կեանքի մէջ անգամ կը տեսնենք որ իշխանութիւն ունեցողը ո՛րչափ քիչ վարուի անով ա՛յնչափ աւելի յարգի և համակրելի կը դառնայ։ Նոյնպէս եւ լեզուին տէր վարպետները շատ քիչ անգամ կը դիմեն այդ ազատութեան և այն ալ մեծամեծ հարկերու եւ պարագաներու տակ, մինչդեռ յաճախ գործածութիւնը պարզապէս հեղինակին խակութեան եւ անճարակութեան նշան է։ Սա ալ մոռնալու չէ երբէք որ, ինչ որ ալ լինին այդ շնորհեալ շեղումները, պէտք չէ բնաւ որ կամածին քմածին լինին, այլ լեզուին բնութենէն օրինականութեան վաւերացում ունենան եւ անոր թոյլտուութեան սահմանին մէջ մնան, այլապէս դատապարտելի են իբրեւ խորթ եւ օտար։

6. Լեզու

Անժխտելի է որ բանաստեղծական լեզուն արձակ հասարակ խօսքը չէ. շատ մասերով անկէ կը տարբերի, թէ՛ բառերով թէ՛ դարձուածներով եւ թէ մինչեւ իսկ կարգաւորութեամբ։

Կան բառեր որ հասարակ գործածութենէ ինկած են եւ բառարաններու զանխուլ խորշե՛րը միայն կը տեսնուին։ Ասոնք մեռած չեն, ինչպէս ոմանք կը կարծեն. ոչ մի բառ կը մեռնի լեզուի մը մէջ, այլ ի թմբիր են (լէթհարճի), ընդարմացած վիճակի մէջ, եւ ճարտար ձեռքի մը կ'սպասեն, պատեհ առիթով մը, վերստին ի զարթ գալու համար։ Հասարակ կիրառութեան մէջ ասոնց գործածութիւնը, թէեւ ոչ ապօրէն եւ անվայել, այլ քանի որ մութ եւ անիմանալի են՝ այնչափ ալ յանձնարարելի չէ. իսկ բանաստեղծին համար այնպիսի հոգ եւ վարանում չկայ, կ'ուզէ սովորական ըլլայ կ'ուզէ անսովոր, բաւա-

կան է որ ճիշդ ուղուած եւ փնտռուածն ըլլայ բառը, վայելչապէս մուտ ունի բանաստեղծութեան մէջ: Վտանգը հոս ալ այն է որ անպատճառ նորալուր եւ անսովոր բառերու ետեւէ իյնալով բոլորովին չմթագնի եւ Նարեկեան չդառնայ գրութիւնը եւ ոչ ալ մի անգամ կամ երկիցս գործածուած բառ մը նորէն նորէն կրկնուի բանաստեղծական երեւնալու տղայամտութեամբ:

«Ձերդ»ը, դ. օ. գիտենք որ զիարդին կրճատեալն է եւ իբր, պէս, որպէս ի համազօր եւ անոնց տեղը շատ անգամ գեղեցիկ դիրք կ՚առնէ ոտանաւորին մէջ: Բայց կը դադրի հաճելի ըլլալէ եւ տաղտուկ իսկ կը պատճառէ եթէ ամէն քայլափոխիդ «զերդ» երու հանդիպիս: Այսպէս իմացիր նաեւ շատ մ՚ուրիշ բառերու համար ալ որ բանաստեղծական լինելու յաւակնութեամբ չարունակ առջեւդ կը ցցուին. ի բաց առեալ այն նորակերտ անճոռնի բառերու հեղեղն ալ որ անցք չեն իտար հարազատ հողի վրայ քալելու:

## Բ. ԱԶՆՈՒՈՒԹԻՒՆ

Բաւական չէ գեղեցկութիւնը որ շինուածքին նիւթական վայելչութիւնը կը նկատէ, այլ պէտք է սա հոգեպէս ալ բարձր եւ ազնիւ լինի: Անարդ եւ ստորին մտածութիւններ, չուկայիկ եւ գռեհիկ դարձուածներ, անճաշ եւ անպատշաճ ասացուածներ, կոշտ եւ թանձր օրինակներ՝ պատկերներ՝ բացատրութիւններ կը ճնշեն հոգին եւ նողկանք միայն գիտեն ազդել:

Որչափ ալ բուռն եղած ըլլայ զայրոյթը հեղինակին՝

«Արիւնով թրմուած հողը լզել»

բացատրութիւնը զզուելի տգեղութիւն մ՚է: Լեզուին մէջ ձեւ եւ ոճ չպակսիր նոյն զայրոյթը եւ տեսարանի նոյն ազեխարշ հանգամանքը աւելի ատելի կերպով յայտնելու: Այսպիսի խութերու առջեւ է որ իսկապէս հմուտ՝ բարեկիրթ եւ փափկանկատ հեղինակը կը յայտնուի: Գիտէ նա չըսել եւ ըսել, քօղարկել եւ հօլանել, զարնել եւ չվիրաւորել, գրգռել եւ ամոքել, այլ ոչ պարտասել եւ զարշեցնել:

## Գ. ՆԵՐԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ

*Ներդաշնակութիւնը, երաժշտական իմացողութեամբ, դաշնակութիւն կամ քաղցրաձայնութիւն* (մելօտի) *չէ։ Ատոր համար ունինք* մեղեդի *բառը՝ յոյնէն փոխառեալ։ Ձայն մը երաժշտաբար* մէլօտիէօ *է երբ ըստ ինքեան քաղցր հնչէ ականջին՝ առանց որ եւ իցէ ուրիշ ձայներու ընկերակցութեան։ Նոյնպէս երաժշտական կտոր մը ամբողջովին* մէլօտիէօ *է կ՚ըսուի եթէ տիրող* թօնը *ծայրէ ի ծայր քաղցր եւ մեղմօրէն։ Իսկ ներդաշնակութեամբ կ՚իմանան զուգայարմար միաբանութիւնը զանազան ձայներու որք թէեւ տարբեր իրարմէ աստիճանաւ՝ դիրքով՝ որակով եւ քանակով, եւ կամ այլ նուագարաններէ արձակուելով, այլ չեն եղծաներ խաթարեր զիրար, ընդհակառակը կ՚ամբողջացնեն կը լրացնեն զմիմեանս փոփոխակի եւ հաճելի լրութիւն մը կը կազմեն որ ոչ նուազ հաճելի յարադրութեան մը կը յանգի հոգւոյն մէջ։*

*Թէեւ տարբեր հողին վրայ, սակայն ամենեւին նոյն է նաեւ տաղաչափութեան մէջ։ Հոս ալ համեմատական չափակցութիւն մը կայ նկատելի, թէ՛ ձայնից՝ թէ՛ մասանց եւ թէ ամբողջին մէջ։ Այս ամէնը իրարու հետ պէտք է ա՛յնպիսի գեղայարմար զուգախառնութեամբ պատշաճին որ հոգին բերկրի եւ զուարճանայ։ Այս արդիւնքը յառաջ բերողը ներդաշնակութիւնն է։*

*Ուրեմն ներդաշնակութիւնը ոչ սոսկ բառի վրայ է, ոչ ձայնի եւ ոչ խօսքի լոկ այս կամ այն մասին վրայ, այլ ընդհանուրին առ հասարակ, թէ՛ ձայնական, թէ՛ կազմական։ Այնպէս որ կրնան տողերը, ուրոյն առնելով, շատ քաղցրալուր ըլլալ, բայց ոչ ներդաշնակ, եթէ համադաշնութեան մէջ չէ ընդհանուրին հետ։*

*Հոս կը վերջացնենք մեր այս հակիրճ տեսութիւնը հայ բանահիւսութեան վրայ յուսալով որ անօգուտ գործի մը չաշխատեցանք։*